# ԱՆՀԱՅՏ ԶԻՆՎՈՐԻ ԳԵՐԵԶՄԱՆԻ ՄՈՏ

*(Հարցազրույց)*

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ



— Ո՞վ ես:
— Զինվոր եմ:
— Գիտեմ, զինվոր ես, բայց ո՞վ ես, ասա՛:
— Զինվոր եմ՝ հայրդ, եղբայրդ, գուցե,
Գուցե մտերիմ ընկերդ մանկութ...
— Բայց մի՞թե չունես անուն, ընտանիք...
— Անհայտ զինվոր է անունս հիմա,
Իսկ ընտանիքս՝ երկիրն հայրենի,
Շիրիմս՝ ռազմի ողջ ճանապարհը.
Գնա՛, կտեսնես...
— Հայր ունեմ կորած, հայրս չե՞ս արդյոք...
— Հայր եմ և որդի, եղբայր ու ընկեր...
— Տարի՞քդ:
— Քսան, երեսուն, հիսուն...
— Դե՛, դա վաղուց էր, իսկ հիմա՞ արդեն...
— Ասացի՝ քսան, երեսուն, հիսուն,
Եվ էլ չի փոխվի, ոչինչ չի փոխվի.
Մեր ժամացույցը այնտեղ կանգ առավ...
— Բայց դու մի բան էլ քո՛ մասին ասա:
— Չե՛մ կարող, մենակ չե՛մ եղել երբեք,
Հիմա առավել... բանակ ենք մի մեծ՝
Եվ բոլորիս էլ կոչում են «անհայտ».
Ամեն մեկիս մեջ մի-մի մասնիկ կա
Անհայտ համարվող ամեն զինվորից:
— Նաև ի՞մ հորից...
— Նաև քո հորից... մի՞թե չես լսում՝
Նրա ձայնով եմ ես քեզ հետ խոսում...
— Այո՛, այդ նա՞ է... այսինքն՝ դո՛ւ ես...
Հա՛յր, ցուրտ չէ՞ այդտեղ:
— Ցուրտ էր, բայց հիմա մեզ տաքացնում է
Կրակը անմար,- և այն, որ դուք կաք,
Որ կա երկիրը, որ հարսանիք է լինում ամեն օր,
Որ մանուկներ են ծնվում նորանոր
Եվ որ հիշում եք, որ հիշում եք մեզ
Եվ այն ամենը, ինչ որ եղել է...
Նշանակում է՝
Էլ չի՛ կրկնվի անցածը երբեք...

*Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ*

# ՀԱՆԴԻՊՈՒՄ ՀԵՐՈՍԻ ՀԵՏ



**«Պիոներ» ամսագրի աշխատակից, գրող Գրիգոր Մակունցը Մոսկվայում հանդիպեց Սովետական Միության հերոս Ալեքսեյ Պետրովիչ Մարեսևին և խնդրեց պատասխանել մի քանի հարցերի, որոնք հետաքրքրել կարող են մեր ընթերցողներին.**

**— Ալեքսե՛յ Պետրովիչ, խնդրում ենք պատմել Ձեր մանկության ու պատանեկության և, ընդհանրապես, նախապատերազմական շրջանի Ձեր կյանքի մասին:**

— Դա կլինի իմ սերունդի պատմությունը, որովհետև հասակակիցներիցս շատերը, որոշ տարբերությամբ, կյանքի նույն ճանապարհն են անցել: Մանկությունս անցել է Վոլգայի ափին, փոքրիկ ու գեղեցիկ Կամիշին քաղաքում: Այդ տարիների կյանքիս ամենամեծ իրադարձությունը՝ պիոներական կազմակերպության շարքերն ընդունվելն էր: Կարմիր վզկապը իմ առաջին պարգևն էր, քանի որ պիոներ դառնալու համար հարկավոր է լինել ուսման և աշխատանքի մեջ առաջավոր: Հետագայում ինձ ընտրեցին ջոկատավար: Դպրոցը ավարտելուց հետո քաղաքի գործարանում աշխատեցի խառատ. հայրս մահացել էր, պետք էր օգնել ընտանիքին:

1934 թվին ՀամԼԿԵՄ Կենտկոմի կոչով մեր երկրի հարյուրավոր պատանիների ու աղջիկների հետ մեկնեցի Հեռավոր արևելք՝ կառուցելու Ամուրի Կոմսոմոլսկ քաղաքը: Այստեղ սկսեցի մասնակցել աերոակումբի պարապմունքներին, իսկ երբ զորակոչվեցի բանակ՝ ընդունվեցի Բատայսկի ավիացիոն ուսումնարանը, որն ավարտեցի կրտսեր լեյտենանտի զինվորական աստիճանով, պատերազմից քիչ առաջ:

Ինչպես այժմ տիեզերագնացությունը, երեսնական թվականներին էլ օդագնացությունն էր գրավում երիտասարդությանը: Ես և իմ ընկերներից ոչ մեկը, սակայն, չէր մտածում օդաչու դառնալ՝ պատերազմում կռվելու համար: Մենք երազում էինք հերոս օդաչուներ Կամանինի, Չկալովի, Վոդոպյանովի, Մոլոկովի և նրանց ընկերների պես համարձակ ու արտասովոր թռիչքներ կատարել՝ վտանգի ենթարկված մարդկանց փրկելու կամ նոր հայտնագործություններ կատարելու համար: Բայց սկսվեց Հայրենական մեծ պատերազմը և սովետական ողջ ժողովրդի հետ, օդաչուների ամենամեծ ցանկությունը դարձավ՝ մեր հայրենիքի երկինքը մաքրել ֆաշիստական գիշանգղներից, որ միշտ լինի մաքուր երկինք և շողա արևը:

**Թե ինչպես Ալեքսեյ Մարեսևը մարտնչեց այդ վեհ ցանկությունը իրագործելու համար, պատմում է գրող Բորիս Պոլևոյը իր հռչակավոր «Պատմություն իսկական մարդու մասին» վեպում: Համառոտակի վերհիշենք: Պատերազմի սկզբին Ալեքսեյ Մարեսևը (վեպում Մերեսև) մարտական թռիչքներ էր կատարում Ուկրաինական ,այնուհետև՝ Հյուսիսարևմտյան ռազ-**

## ԵՐԳԸ

*ՍԵՐԳԵՅ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

*Քամին թռչում է դաշտերով,*
*Հաղորդալարերն են նրա սանձերը:*
*— Ես սլացող նժույգ եմ,— ասում է քամին,—*
*Քերծել են մարմինս ծառի ճյուղերը,*
*Եվ արտասվել եմ խոտի դեզերին,*
*Բայց ես քամին եմ*
*Եվ սլանում եմ, ինչպես նժույգ:*

*— Ես լողացող ձուկ եմ,— ասում է ջուրը,—*
*Խփել է ինձ գետը որձաքարերին,*
*Սեղմել են կողերս նեղ ափերը,*
*Բայց ես ջուրն եմ*
*Եվ լողում եմ արագ ինչպես ձուկ:*

*— Ես ջահել զինվոր եմ,— ասում է երգը,—*
*Փշալարերն են ծակել մատներս,*
*Եվ անձրևներն են թրջել կոպերս,*
*Բայց ես երգն եմ, երգը*
*Եվ կռվում եմ, ինչպես ջահել զինվոր:*

մաճակատներում: Նրա ինքնաթիռի վրա նկարված էր չորս կարմիր աստղ. դա նշանակում էր, որ ոչնչացրել է թշնամու չորս ինքնաթիռ: Օդային մարտերից մեկում Մարեսևի ինքնաթիռը վնասվածք է ստանում, և նա հարկադրված է լինում վայրէջք կատարել: Տասնութ օր շարունակ, վիրավոր, սովահար օդաչուն սողում է անծանոթ վայրերով՝ յուրայիններին գտնելու հույսով: Ուժասպառ վիճակում, նրան գտնում են Պլավ գյուղի դպրոցականներ Սերյոժա Մալինը և Սաշա Վիխրովը (վեպում Ֆեդկա): Մի շաբաթից ավելի գյուղի բնակիչները խնամում են վիրավոր Մարեսևին: Բժշկական օգնություն էր պետք, բայց շրջակայքում բժիշկ չկար: Եվ ահա գյուղ է գալիս հատուկ ինքնաթիռ և Մարեսևին տեղափոխում Մոսկվա: Այստեղ անդամատում են նրա զույգ ոտքը: Մարեսևը ծանր է ապրում այդ դժբախտությունը, բայց նրան երբեք չի լքում մարտի դաշտ վերադառնալու հույսը: Դեռ հիվանդանոցում նա սկսում է մարզվել՝ պատրաստվելով թռչել պրոտեզներով: Մարեսևի համառությունը հաջողությամբ է պսակվում: 1943 թվականի փետրվարին, առողջարանում բուժվելուց հետո, վիրավորվելուց մի տարի անց, Մարեսևը կատարում է առաջին փորձնական թռիչքը, իսկ հուլիսին նորից ռազմաճակատի առաջավոր գծում էր: Կուրսկի աղեղում ցուցաբերած սխրագործության համար Ալեքսեյ Մարեսևին շնորհվում է Սովետական Միության հերոսի կոչում: Մինչ այդ նա պարգևատրվել էր Կարմիր դրոշի շքանշանով: Պատերազմի ընթացքում Մարեսևը կատարել է 86 մարտական թռիչք և ոչնչացրել թշնամու 11 ինքնաթիռ:

— Ինչպե՞ս ընթացավ Ձեր հետագա կյանքը, Ալեքսե՛յ Պետրովիչ: Ի՞նչ շարունակություն ունեցավ վեպը:

— Պատերազմի հաղթական ավարտից հետո, ես նորից պայքարի առաջավոր դիրքերում էի, քանի որ խաղաղությունը պետք է պաշտպանել ոչ միայն պատերազմի ժամանակ, այլ՝ միշտ և ամենուր: Մասնակցեցի Փարիզի, Վարշավայի և Մոսկվայի խաղաղության կոնգրեսներին, խաղաղության համաշխարհային շարժմանը: Իմ բազմաթիվ հանդիպումներից առանձնապես կարևոր են հանդիպումները երեխաների հետ: Մենք՝ պատերազմի վետերաններս պատմելով պատերազմի արհավիրքների մասին, համեմատելով պատերազմական տարիները խաղաղ ու երջանիկ ներկայի հետ, կոչ ենք անում պահպանել ներկան և ավելի գեղեցիկ ապագա կառուցել:

Պատերազմից հետո Ալեքսեյ Մարեսևը ավարտել է ՍՄԿԿ ԿԿ-ին կից բարձրագույն կուսակցական դպրոցը, ակադեմիայի հասարակական գիտություններին կից ասպիրանտուրան, ստացել պատմական գիտությունների թեկնածուի աստիճան: 1958 թվին, երբ ստեղծվեց Պատերազմի վետերանների սովետական կոմիտեն, Մարեսևը ընտրվեց նրա պատասխանատու քարտուղարը: 1958 թվից նա Դիմադրական շարժման մասնակիցների միջազգային ֆեդերացիայի փոխնախագահներից մեկն է: Պարգևատրվել է նաև Աշխատանքային կարմիր դրոշի և Հոկտեմբերյան հեղափոխության շքանշաններով:

— Հաղթանակի երեսունամյակի առթիվ ի՞նչ կմաղթեք մեր ամսագրի ընթերցողներին, Հայաստանի պիոներներին ու դպրոցականներին:

— Հայ երեխաներին շնորհավորելով մեծ հաղթանակի 30-ամյա հոբելյանի առթիվ, մաղթում եմ՝ իրենց ամեն մի օրը նշանավորել հաղթանակով, թե՛ ուսման, թե՛ աշխատանքի մեջ:





# ՊԱՏԱՆԻ ՀԵՐՈՍԸ

*ՄԿՐՏԻՉ ՍԱՐԳՍՅԱՆ*



կրաինայում ծանր աշուն էր՝ 1943 թվականի աշունը: Ֆաշիստները նահանջում էին ջրային մեծ պատնեշից՝ Դնեպրից անդին, որպեսզի յոթտակ արգելքներով և ռազմա-ինժեներական կառույցներով՝ կողպեք դնեն մեր ճանապարհին: Գետանցումը՝ հակառակորդի կրակի տակ, դա կռվի ամենածանր պահն է: Զինվորը քաջության հետ մեկտեղ պետք է ունենա նաև ճարպկություն, մեծ խորություններում լողալու կարողություն և գետանցման ժամանակ կրակ տեղացող թշնամուն պատասխան կրակով չեզոքացնելու հմտություն: Բայց ես մի փոքր առաջ ընկա: Ուրեմն, մեր զորքերը, նրանց թվում նաև մեր զորամասը, 1943 թվականի սեպտեմբերին հասել էին Դնեպրի ափը, և եթե մեզ հաջողվեր ընթացքից գրավել Նովո-Մոսկովսկի գետափնյա ոչ մեծ քաղաքը, ապա միանգամից կհայտնվեինք Դնեպրի ափին:

Ծանր մարտերով մեր զորամասը մղվում էր դեպի նպատակակետը: Պատկերացնել է հարկավոր, թե ինչպիսի դժվար, անհաղթահարելի արգելքներ են հաղթահարում մարտիկները, երբ աշնանային անամպ երկնքից՝ ինքնաթիռները, ոտքերի տակից՝ ականները, դիմացից՝ զենքի բոլոր տեսակները հուր ու կրակ են ժայթքում և ցերեկը դառնում ծխի և փոշու, կրակի և բոցի մի արյունոտ շաղախ, մի մթամած գիշեր: Բայց հրամանը՝ հրաման էր: Պետք էր շարժվել առաջ: Պետք էր հասնել սրբազան Դնեպրին:

Առավոտյան մեր գնդի հրամանատարը, փոխգնդապետ Մարիմենկոն, հրամայեց.

—Քաղաքը պետք է գրավել հենց այսօր՝ ընթացքից: Տանկային մեծ համալրում ենք ստացել, այնպես որ հետևակի գործն այնքան էլ դժվար չի լինի...

Գեղեցիկ լուսաբաց էր: Հեռվում թափանցիկ մշուշի միջից երևում էր քաղաքը՝ տաճարների ոսկեզօծ գմբեթներով և գործարանների ծխնելույզներով:

Իսկ հեռո՜ւ-հեռվում՝ լուսավոր, արծաթե մի շերտ...

— Դնե՛պրն է, — ասացին տղաները:

Դնեպրի՝ Ուկրաինայի մայր գետի մասին ես շատ էի լսել: Գիտեի, թե որքան գեղեցիկ եր-



գեր ու բանաստեղծություններ են ձոնվել նրան, որքան լեգենդներ և ավանդություններ են կապված Դնեպրի հետ: Անգիր գիտեի մեծ Կոբզարի՝ Շևչենկոյի «Կտակ» բանաստեղծությունը, պոետի երազանքը՝ Դնեպրը տեսնել ազատ և հանգչել նրա կանաչ ափին:

Առավոտը գեղեցիկ էր: Բայց ահա սկսվեց հրետանային նախապատրաստությունը: Որոտացին հարյուրավոր թնդանոթներ, կաղկանձեցին արկերն ու ականները, ինքնաթիռները հռնդացին և երբ արթնացան և որոտացին նաև հակառակորդի զենքերը, լուսաբացի գեղեցկությունն ասես ընկավ գնդակոծության տակ և սպանվեց: Պայթյունների ծուխն ու փոշին ասես սև վարագույրով գոցեցին քաղաքն ու Դնեպրի արծաթե լուսավոր գոտին:

—Առա՛ջ... — եղավ հրամանը:

Հարձակման բնագծերից դուրս սողացին տանկերն ու շռնդալից խոյացան առաջ: Թշնամին չդիմացավ և նահանջեց: Պայթյունների ձայնին խառնվեց մեր հաղթական «ուռա՜ն»: Չկա ավելի մեծ բերկրանք, քան ծանր մարտով ձեռք բերած հաղթանակը: Երբ տեսնում ես խուճապահար նահանջող թշնամուն, կուրծքդ ուռչում է հպարտությունից, որ դու մասնակից ես քո հայրենիքը թշնամուց ազատագրելու մեծ գործին:

Տանկերը հանկարծ, ասես հրամանով, կանգ են առնում: Քիչ հետո լսվում է հրամանատարության նոր հրամանը.

—Ականորսիչներն առա՛ջ...

Տանկերի ու հետևակի ճանապարհին, այս անգամ, սկսում են մաքրել մեր ականորսիչները: Գաղտնիքը պարզվում է ոչ անմիջապես: Մենք տեսնում ենք գլխամասային տանկի մոտ հավաքված տանկիստներին, որոնք վեր-վեր են թռցնում մի երեխայի: Պարզվում է, որ նա՝ այդ տասներեքամյա պատանին, Վանյա Բոյկոն, մեր փրկարարն է, մեր հաղթանակի բարի ոգին: Թշնամին նահանջելիս ականապատել է կամուրջը, քաղաք տանող ճանապարհը և դաշտը: Փոքրիկ հերոսը պատմում է.

— Սկզբում տաճարներն ականապատեցին (աստվածապաշտներ՚ս նայեցեք), հետո դուրս եկան դաշտ: Գնացի նրանց ետևից (սեփական նախաձեռնությամբ, իհարկե) և տեսա, որ խիստ շտապ ականապատում են դաշտն ու կամուրջը: Մտքումս պինդ պահեցի ականապատված դաշտի սահմանները: Գերմանա-



*Լրացավ Վարդգես Բաբայանի ծննդյան 50 տարին։ Նա բազմաթիվ բանաստեղծական ժողովածուների հեղինակ է. «Բողբոջներ», «Մասրենի», «Տարերք», «Հորձանուտ», «Փեփուշ», «Անձրևանձրև»։ Բաբայանը նաև թարգմանիչ է. ռուս և սովետական ժողովուրդների բանաստեղծների մի շարք գործեր հայերեն են հնչել նրա շնորհիվ։ Նրա գրչին է պատկանում հույն նշանավոր առակագիր Եզոպոսի առակների գրքի վերջերս կատարված թարգմանությունը։*

*Շնորհավորենք սիրելի բանաստեղծին իր ծննդյան 50-ամյակի առթիվ և ցանկանանք նրան քաջառողջություն և ստեղծագործական նոր հաջողություններ։*



# ՊԱՊԸ

*ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ*

— Մենք այն ժամանակ,— ասում է պապը,—
Ջահել էինք դեռ, հաղթ ու համարձակ,
Երբ պայթեց հանկարծ կովի տագնապը,
Եվ մենք բոլորս զինվորներ դարձանք:
Մեր դեմ հեքիաթի դևը չէր կանգնած,
Այլ մի թշնամի նենգ ու դիվային,
Որ ռազմի բոլոր զենքերով զինված՝
Ամեն ինչ այրում, տալիս էր մահին:
Բայց դու, թոռնի՛կս, հիշի՛ր հավիտյան,
Որ անխախտ մնաց մեր հավատը մեծ,
Ո՛չ տանջանքները մեզ սասանեցին,
Եվ ո՛չ էլ անգամ մահը սասանեց:
Մեզ սպանեցին՝ վերածնվեցինք,
Այրեցին, բայց մենք հառնեցինք նորից,
Եվ այսպես կյանքով ապացուցեցինք,
Որ մեր հավատը բարձր է բոլորից:

Լռում է պապը... ինչե՞ր է հիշում,
Այն ընկերներին, որ տուն չդարձան,
Բայց և ապրում են մեզ հետ ու շնչում,
Որպես կենդանի փառքի հուշարձան:
Վառվում են թոռան աչքերը ցասմամբ,
Նայում է պապին ու հուզված գոչում.
— Թշնամուն լրիվ ջարդեցի՞ք, ասա՛:
— Ջարդեցինք, այո՛, հենց իր իսկ որջում:

ցիները հենց հեռացան, դուք երևացիք: Կանգնեցի կամուրջի առջև և բարձրացրի թաշկինակը: Մնացածը գիտեք...

Մնացածը մենք, իհարկե, գիտեինք: Պատանի հերոսը ականորսիչներին անսխալ ցույց էր տալիս ականապատված դաշտի սահմանները: Հողում թաղված ահարկու ականների թիվը հարյուրների էր հասնում: Եթե չլիներ Վանյան, ինչպիսի՜ կռիվներ կլինեին...

— Վանյա՛, քո հետախուզական տեղեկությունները մեզ փրկեցին, — համբուրում են նրան զինվորները:

Վանյան ժպտում է: Մի քանի օր անց, փոքրիկ հերոսը զինվորական համազգեստ է հագնում, տանկիստների նշերը: Կրծքին «Կարմիր դրոշի» շքանշան ունի, իսկ գոտկատեղից կախված են փայտե թուրն ու ատրճանակը:

Նրա մեջ դեռևս հերոսն ու երեխան միասին են: Քայլում է տասներեքամյա հերոսը, իսկ նրան նախանձով և հուզմունքով հետևում է երեխաների «շքախումբը»:

# Ս Ա Դ Ա Կ Ո Ն

Փոքրի՛կ Սադակոն...

Ո՛չ ոքի վրա նա չէր կրակել,
Չէր պատերազմել նա ո՛չ մեկի դեմ,
Եվ ինչպե՞ս, ինչպե՞ս պիտի կրակեր,
Եվ ինչպե՞ս պիտի նա պատերազմեր,
Երբ դեռ բարուրից նոր էր դուրս եկել,
Եվ դեռ նոր միայն «մայրիկ» էր ասում,
Երբ ատոմային ռումբի փոխարեն
Տիկնիկ էր սիրում,
Ինքնաթիռների փոխարեն՝
Թղթե օդապարուկներ...

Ախր Սադակոն չգիտեր նույնիսկ
Որ իր ծնվելուց տարիներ առաջ,
Հիրոսիմայում, տարիներ առաջ,
Այնտեղ, ուր ինքը ծնվել-ապրում է,
Մի ռումբ է պայթել,
Այնպիսի՛ մի ռումբ,
Որ մոխրակույտ էր դարձրել քաղաքը,
Եվ շա՛տ, անչա՛փ շատ մարդիկ են մեռել։

Եվ հենց այդ ռումբը տարիներ հետո,
Ռումբը ընկնելուց տարիներ հետո,
Մի արևոտ օր, երբ մայրիկի հետ
Սադակոն խաղում ու ծիծաղում էր,
Եկավ ու նրան բռնեց աննկատ։

Փոքրիկ Սադակոն՝ այդ ճապոնուհին,
Երկու տարեկան այդ ճապոնուհին
Անկողնուն գամվեց։
Աղջիկն էլ երբեք տիկնիկ չխաղաց,
Ընկերների հետ չվազեց դրսում,
Երբեմն միայն իր լուսամուտից
Նա թռչունների դայլայլն էր լսում։
Լուսամուտի տակ կանգնած բալենին
Տասն անգամ ծաղկեց ու ծաղկաթափվեց,
Փոքրիկ Սադակոն պառկած էր սակայն,
Չէր ապաքինվում փոքրիկ Սադակոն։

Մի օր մեկն ասաց,
(Ո՞վ էր այդ մեկը, նա չի էլ հիշում),
Եթե Սադակոն սեփական ձեռքով
Պատրաստի թղթե օդապարուկներ,
Հազար հատ թղթե օդապարուկներ,
Կապաքինվի շուտ։

Մահվան դեմ՝ թղթե օդապարուկներ...
Սադակոն բարակ, դողդոջ մատներով
Կտրում է թուղթը և զգույշ ծալում,
Հետո թևիկներ պատրաստում զգույշ,
Հետո՝ պոչիկը։— Ահա առաջին օդապարուկը
Պատրաստ է արդեն։
Օդապարուկը պարում է օդում
Եվ հետո սահուն իջնում աղջկա բարձին սպիտակ․
Ծաղկած բալենին ժպտում է դրսից
Ու լուսամուտից ուզում է ներս գալ,
Թևերը պարզած ուզում է ներս գալ,
Մոր պես համբուրել ու գրկել նրան։

Ու դայլայլում են հավքերն էլ ուրախ,
Սադակոն կապրի՛, փոքրիկ Սադակոն։
Եվ բոլոր-բոլոր մանուկներն ահա
Ճերմակ թղթեր են ուղարկում նրան,
Ուղարկում թղթե օդապարուկներ,
Որ աղավնու պես սպիտակ, անմեղ
Սադակոն բուժվի, փոքրիկ Սադակոն։

Օդապարուկնե՛ր, օդապարուկնե՛ր...
Ասես ձագեր են հանում, բազմանում
Ու երկինք թռած՝ աղավնի դառնում։
Սադակոյի տան բաց լուսամուտից
Տարիներ ի վեր թռչո՛ւմ են նրանք,
Երամներ կազմած թռչո՛ւմ են նրանք
Ու լցնում երկինքն աղավնիներով,

Ճերմա՛կ, ճե՛պ-ճերմակ աղավնիներով...

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ



# ՎԵՐՋԻՆ ՀԱՏԻԿԸ



ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

— Չեղավ, այս մեկն էլ չվառեց...

Ես հին, քրքրված վերարկուի մեջ ավելի պինդ կծկվեցի, բոբիկ ոտքերս տակս առա: Անձրևը շարունակում էր նվագը: Մուքել պապը կռացած տեղից բարձրացավ: Չոր փայտերի կույտի առջև լուցկիների հազիվ վառված փայտիկներն էին:

— Թաց են, փայտերը թաց են, չեն կպչում,— թոնթորաց նա:— Հո շատ չե՞ս մրսում:

— Չէ՛,— սրթսրթալով շուրթերս շարժեցի ես:

— Հիմա մի բան կանենք, չվախենաս,— չգիտես իրե՞ն, թե՞ ինձ հուսադրեց նա:— Արդեն մեծ տղա ես, վեցդ լրացավ, չէ՞:

Գլխով արի: Պապը ուրախացած ինձ նայեց.

— Ահագին տղամարդ ես դառել...

Մի պահ կարծես մոռացանք ցուրտ, անձրև: Չվառվող կրակի փոխարեն խոսքի կպչանն էր կրակվում...

— Արամս նամակ չգրեց: Ախր, ո՞նց չի իմանում, որ Գայան տատը անհամբեր է: Ախր տղերքի «սև թուղթը» շատ տանջեց Գայանին:

Ծառի փչակից փորձեց չոր տերև գտնել:

— Մի չոր բան չի մնացել: Էս ի՞նչ անտեր անձրև է սկսել: Վերջ չկա: Աշխատանքն էլ մնաց: Արտերը հնձել են պետք, մարդ չկա: Սա էլ մի կողմից է խանգարում:

— Բա դու ինչի՞ չես հունձ անում, պա՛պ:

— Նախագահը չի թողնում: Ասում է՝ դու էդ անասուններր յոլա տար: Թող սելերը լավ լծկան ունենան, հերիք է: Դու, ասում է, արդեն մեծացել ես, հոգնել: Տղերքն էլ՝ բանակում, թոռներիդ հույսը դու ես: Ախր նախագահը Արամիս ընկերն է: Իրար հետ դպրոցն ավարտեցին, գնացին, որ ագրոնոմ դառնան, ու...

Պապը հոգոց հանեց.

— Հո չե՞ս մրսում, հիմա մի բան կանենք, կրակ կվառենք, կտաքանանք: Մի վե՛ր կաց, վազիր ցա՛ծ, եզները արտերը կլցվեն, կտրորեն, հացը կփչացնեն:

Ես մի կերպ վեր կացա տեղից: Ոտքերս ընդդարմացել, չէին շարժվում: Մի կերպ հասա ձորի պռընկին: Եզները դեռ Կանաչ տախտում նստած որոճում էին:

— Պա՛պ, եզները նստած են...

— Հա՛, դե լավ է: Արի՛, մո՛տ արի, ծառի տակ չոր է, նստի՛ր, հիմա կրակը կվառեմ,— նա նորից վառեց լուցկին: Փայտերը թշշում էին: Չորացած տերևները խոնավացել էին: Մի քանի վայրկյան մխում էին լուցկու բոցից, բայց կրակը չէր ստացվում:

— Թաքուն էի պահում,— կիսատ միտքը շարունակեց պապը:— Թաքուն էի պահում, բայց իմացավ Գայանը, իմացավ: Ջրի ճանապարհին կանայք փըսփըսացել էին, ականջին էր հասել: Եկավ լաց եղավ, հանեց նկարները: Ես չգիտեի ի՞նչ ասեմ, ո՞նց մխիթարեմ: Դե, ասում եմ, ա՛յ կնիկ, կարող է սուտ է, քանիսի «սև թուղթն» է եկել, հետո էլ՝ իրենք: Լավ էր, երկու օր հետո Արամս նամակ գրեց: Չէ՛, աստված չի ուզում, որ ամեն բան կորչի: Դե մեծ տղիս՝ Գևորգիս տղան էլ երկու տարեկան է: Բլբլում է, Գայանին մխիթարում: Ախր դժվար է, Արտա՛կ ջան, երեքի «սև թուղթը» միանգամից ստացանք...

Անձրևը կտրվեց: Բայց դեռ ծառի սաղարթից արցունքների նման կաթիլներ էին թափվում մեր սառած դեմքերին, մեջքներիս կպած վերնաշապիկներին: Պապը դեռ շարունակում էր վառել լուցկին: Արդեն վերջանում էին հատիկները, բայց նա համառորեն փորձում էր խարույկ վառել:

— Էս վերջինն էլ փորձենք, Արտա՛կ ջան,— պապը զգուշությամբ վառեց լուցկին, ափերով քամուց պաշտպանելով, մոտեցրեց փայտերի փոքրիկ կույտին: Լուցկու վառված հատիկներից մեկը բռնըկվեց: Պապը զգուշությամբ նրան մոտեցրեց մյուս հատիկները և մի մեծ տերև, որը երևի բազմաթիվ լուցկիների ջերմությունից արդեն չորացել էր, բըռնըկվեց: Փոքրիկ բոցը սկսեց անվստահորեն պարել: Պապը կծկվել, ավելի էր փոքրացել: Ասես ծունկի էր իջել աղոթքի այդ փոքրիկ կայծի առջև, որ հույսի շող էր... Կրակը վառվեց: Հետզհետե փայտերը մեկը մյուսին տաքացնելով՝ վառվեցին: Պապը չէր համարձակվում բարձրանալ տեղից, կարծես վախենում էր իր շարժումով կորցնել մեծ տանջանքով ձեռք բերած կրակը: Եվ երբ արդեն առաջին կայծերը փոքրիկ խարույկ էին դարձել, նա վեր կացավ:

— Մոտեցի՛ր,— նայեց ինձ,— այդ փայտե՛րն էլ մոտեցրու, հիմա արդեն կրակ ունենք, կտաքանանք, կչորացնենք շորերը:

— Ինչ լա՜վ են վառվում փայտերը,— ուրախացա ես:

— Հա՛, արդեն կվառվեն,— հոգնած ասաց պապը:— Տեսնես Արամս ո՞րտեղ է, ո՞ր կրակի բերանում:

Ես չհասկացա ինչ «կրակի բերանի» մասին է խոսքը, բայց լռեցի...

Խարույկը արդեն ճարճատում էր: Բոցերը ուրախ պարում և թռչկոտում էին ծառի բունն ի վեր...

# ԵՂԵԼՈՒԹՅՈՒՆ

*ՄԱՐՏԻՆ ՔԱՐԱՄՅԱՆ*

Պատմողը վրացի մի նկարիչ էր, որն իբրև շարքային զինվոր մարտերով հասել էր Բեռլին.

— Այս պատահեց Դրիմում, քառասունմեկու թվականի ձմռանը: Թշնամու գիշատիչները հանգիստ չէին տալիս Նուլնիսկ ծովափնեյ դաղարների բոլեններին:

Հերթական ռմբակոծության ժամանակ էր, ես դեռ չէի հասցրել վրայիս հողը թափ տալ, երբ կողքիս հայտնվեց ինչ-որ արկղ շալակած մի զինվոր, իսկ նրանից հետո՝ մի սպա, սև շինել հագած, հավանաբար ծովային:

—Մեկ անհապաղ հարկավոր է նկարիչ, — մոտենալով, վրա տվեց ծովայինը:

— Այո՛, այո՛, նկարիչ է հարկավոր, — կրկնեց զինվորը:

Այդ ժամանակ ես ներկայացա.

— Նկարիչը կանգնած է ձեր առաջ:

Ու վստահելով ժպիտս, հարցրի.

— Դուք ի՞նչ եք ուզում, հարգելի՛ բարեկամներ: Դիմանկա՞ր պիտի նկարել, թե՞ բլինդաժը զարդարել:

Սպան ասաց, որ առաջադրանքը պատասխանատու է և շտապ: Պետք է ընկերոջն օգնել, մեքենան ռմբակոծել են...

— Ի՞նչ մեքենա: Եվ այստեղ ի՞նչ գործ ունի նկարիչը:

Պարզվեց, որ երիտասարդ սպային հանձնարարված է ռադիոհաղորդում կազմակերպել հակառակորդի զորքի համար: Իսկ նրա մեքենան ընկել է ռմբակոծության տակ, ոչնչացել է այն ամենը, ինչ նա պատրաստած է եղել հաղորդման համար: Անվնաս է մնացել միայն մի թույլ բարձրախոս ու էլի ինչ-որ բան սարքավորումից: Իսկ հրամանը հրաման է. ռադիոհաղորդումը պիտի կայանա: Ու որպեսզի հաղորդումը լսելի լինի, հարկավոր է մոտենալ հիտլերականների դիրքերին: Դա, իհարկե, վտանգավոր է: Եվ ահա ծովայինը մի միտք հղացավ, այն է՝ հակառակորդին շփոթեցնել ու թույլ չտալ, որ նա տապալի ռադիոհաղորդումը: Իսկ դրա համար պետք է նկարիչ...

Զինվորներն արագորեն պատրաստեցին փայտե շրջանակ, վրան քաշեցին սավան: Նկարիչը իսկույն գործի անցավ՝ սկսեց գուաշով նկարել Հիտլերի պատկերը ամբողջ հասակով: Կտավի վրա կաչծակնային արագությամբ հայտնվեցին կարճ բեղեր՝ վերևի շրթունքին, թեք մազափունջ՝ ճակատին...

Գիշերը, խավարի շղարշի ներքո, նկարն ու սարքավորումը տարան հակառակորդի խրամատների մոտ: Նկարը բարձրացրին խրամատի պատնեշի վրա: Սպան կարգադրեց գլուխները դուրս չհանել, մնալ աննկատ:

Լուսաբացին, հիտլերականների խրամատներում վգացվեց աշչէր խանգարել նրան: Արդեն կարելի էր հավաքել սարքավորումը: Բայց վտանգավոր էր. տեղանքը բաց էր ու կրակներու համար ըստուգված:

Ժամանակ չկորցնելու համար ծովայինը մոտեցավ միկրոֆոնին ու սկսեց մի հաղորդում, որ ծրագրով նախատեսված չէր. նա հայհոյում ու անարգում էր ֆյուրերին, որն իր զինվորներին հրելքշել էր անխուսափելի կործանման..

Ֆաշիստների ջղերը չդիմացան: Նկարը փրկելու համար նրանք խրամատներից դուրս թափվեցին: Սակայն իսկույն ընխուժություն: Ծրթաց հատուկենտ կրակոց:Ապա տիրեց տարակուսելի լռություն:

Նկարի ետևում երիտասարդ սպան սկսեց զբաղվել իր արկղներով, լարեց պատեֆոնը: Հրնչեց ինչ-որ վալս, հետո միացվեց ռադիոհաղորդումը հակառակորդի զորքի համար: Ֆյուրերի նկարի ետևից հնչող ձայնը թնդում էր ավելի ու ավելի ուժգին ու փառահորեն: Հիտլերականները շփոթվեցին, չգիտեին ինչ անել՝ կրակե՞լ, թե՞ չկրակել: Այսր այդպիսի բան նախատեսված չէր ո՛չ մի կանոնադրությամբ, ո՛չ մի հրահանգով:

Առաջավոր գծում գտնվող հիտլերականները, ըստ երևույթին, չէին համարձակվում պատասխանատվությունը վերցնել իրենց վրա՝ կրակ բացել, գնդակոծել ֆյուրերի նկարը: Նրանք զեկուցեցին ըստ կարգի: Իսկ ժամանակն անցնում էր:

Քիչ հետո երիտասարդ սպան արդեն կարդացել-հաղորդել էր բոլոր նյութերը: Ոչ մի կրակոց կամ գնդացիրների դաշունային կրակի տակ: Քչերը միայն կարողացան գլուխներն ազատել:

Շուտով հիտլերականները կրակ բացելու հրաման ստացան: Հրանոթներն ու ականանետներն սկսեցին կրակ տեղալ: Նկարի շուրջը բարձրացան պայթյունների սյուներ:

Իսկ բարձրախոսից ավելի ու ավելի ուժեղ էին հնչում հետևյալ խոսքերը.

— Այդպես, խփեցե՛ք դահճին, զարշելուն:

— Ճի՛շտ նշան բռնեցեք, դիպո՛ւկ զարկեցեք պիժվածքին:

— Խփեցե՛ք իր բոլոր հանցանքների համար:

Իրենց առջևում անսովոր նշանակետ տեսնելով՝ հիտլերականները կրակում էին խառնիխուռն ու անճիշտ: Այդուհանդերձ շուտով նկարից մնացին ճղրտված ու խղճալի կտորտանքներ»...

Ավարտելով՝ նկարիչը ժպտաց.

— Այո՛, դա մի անսովոր ու չտեսնված տեսարան էր:



# Գ Ա Ղ Տ Ն Ի Ք Ը

*ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ*

*Նկ. ՄԱՐՋՊԵՏ ՄԱՐԳԱՐՅԱՆԻ*

Երկու տուն կար, դուռ ու դրկից։ Մեկի առաջ ծաղկուն այգի էր, մյուսի առաջ՝ չոր, ամայի անապատ։ Առաջին տան տերերը հագնում էին ծաղկավոր սիրուն զգեստներ, մյուսը չուտ ու չլուտ էին։ Մի տունը հաց ուներ ողջ տարին, իսկ մյուսի հացը վերջանում էր գարնանամուտին։

Չքավորները մի օր իրենց աղքատիկ ընթրիքից հետո՝ կրկին անգամ մտածում են, թե ինչու հարևանի տան առաջ ծաղկուն այգի է, մշտապես հաց ունեն, հագնում են ծաղկավոր սիրուն զգեստներ, իսկ իրենց տանը ճրագ անգամ չկա և մի կտոր հացն ու մի թաս ջուրը խմում են օջախի թույլ լույսով։

Տան հայրը կանչում է աղջկան ու ասում.

— Աղջի՛կ ջան, գնա՛,— ասում է,— և թաքուն նայի՛ր, տես մի բան հասկանո՞ւմ ես, ո՞րն է նրանց ապրելու գաղտնիքը։

— Լավ,— ասում է աղջիկը, գնում է։

Գնում է, ցանկապատի ետևից թաքուն նայում, գալիս է տուն, հորն ասում.

— Հա՛յր,— ասում է նա,— նրանց տան աղջիկը, նա, որ իմ հասակակիցն է, նստած գործասեղանի առաջ՝ գործվածքներ էր գործում, գուցե դա՞ է նրանց գաղտնիքը։

Որոշում են փորձել։ Մի քիչ թել ունեին, ոչխարն էլ խուզում են, այդ բուրդն էլ թել անում, և տան աղջիկը նստում է գործվածք գործելու։ Քանի որ անսովոր էր՝ հոգնում է, ձանձրանում, բայց որոշում է, ինչ գնով էլ լինի, գործը մինչև վերջ անել։ Գուցե ապրելու գաղտնիքը դրանո՞ւմ է, գուցե վերջում մի բա՞ն պարզվի։

Ապա հայրը որդուն է ուղարկում, ասում է.

— Գնա՛, որդի՛,— ասում է,— դո՛ւ էլ թաքուն նայիր, տես դրանց գաղտնիքը ո՞րն է, որ հաց չեն խնդրում, միշտ էլ ունեն, իսկ մենք չքավորությունից աչք չենք բացում։

Տղան գնում է, նայում է երկար, գալիս հորն ասում է.

— Հա՛յր,— ասում է նա,— նրանց տան տղան առավոտ շուտ այծ, ոչխար, կով, ինչ ունեն՝ առնում տանում է հանդ, հեռու խոտառատ արոտներում պահում է, անասունները լավ արածում են։ Կարող է՝ դրանո՞ւմ է ապրելու գաղտնիքը։

— Լավ,— ասում է հայրը,— դո՛ւ էլ առավոտը նույնը կանես։

Տղան մյուս առավոտ եղած-չեղած այծն ու ոչխարը առնում տանում է հեռու խոտառատ արոտները։ Քանի որ սովոր չէր այդքան հեռու գնալ, կի-

սահմանապահին հոգնում է, որոշում է ետ գալ, բայց մի կերպ ինքն իր ալարկոտությունը հաղթահարելով՝ շարունակում է ճանապարհը, անասուններին հասցնում հեռու խոտառատ արոտները: Նա էլ ամեն գնով ցանկանում է իմանալ հարևանների գաղտնիքը:

Ապա մյուս տղան է գնում՝ հարևանների գաղտնիքն իմանալու: Գալիս է հայտնում, որ նրանց տան մյուս տղան հյուսն է, կացինն առած փայտ է տաշում, դուռ ու պատուհան է շինում:

— Երևի,— ասում է,— դա է նրանց գաղտնիքը, որովհետև նրանց տան դուռը, լուսամուտը, ամեն փայտեղեն՝ սեղան, աթոռ, թախտ, մահճակալ, ամենը շատ գեղեցիկ և իսկական լավ ապրողի ունեցվածք են:

Կացինն առնում է, սկսում է փայտ տաշել՝ դուռ, լուսամուտ, թախտ, աթոռ, ուրիշ այլ կարասիներ է սարքում:

Հետո բոլորն էլի հերթով գնում են և թաքուն նայում հարևանի տանը: Ինչ նրանք անում են՝ իրենք էլ նույնը իրենց տանն են անում:

Ու մինչ այդ աղջիկը արդեն գործվածքն ավարտել էր՝ կտրեցին, ձևեցին, կարեցին և ամենքն էլ ծաղկավոր սիրուն շորեր ունեցան:

Տղան, որ այծ ու ոչխար էր տանում հեռու արոտները և անասունները կուշտ-կուշտ արոտ էին անում, սկսեցին առատ կաթ տալ, տղան կթում, բերում էր տուն՝ յուղ ու կարագ, պանիր ու չորթան էին անում՝ ամանները լցնում:

Մյուս տղան, որ հյուսն էր դարձել՝ շուտով տանը պատուհան, դուռ է դնում, կարասի է շինում, և տունը գեղեցկացնում է:

Ապա տանտերը, որ վարելու և ցանելու գործին էր, նրա արտն էլ է լավ բերք տալիս, հնձում, կալսում, ամբարները լցնում են, և ձմեռը նրանց համար այլևս սարսափելի չի լինում:

Հետո տան տիկնոջ գործի վերջն էլ է երևում, տնամերձ հողը շուտով ծաղկում, այգի է դառնում, միրգ ու պտուղ էլ են սկսում ուտել, իսկ նրանց երեխաները խաղում և վազվզում են այգու ստվերներում:

Անտառից փայտ բերել էին սովորել, վառարան պատրաստել, կրակ վառել և նրանց տան ծխնելույզից էլ ձմռանը կապույտ ծուխ էր ելնում:

Եվ միմյանց հարցնում էին, իսկ գաղտնիքը ո՞րն է. գործե՞լը, անասուններին պահե՞լը, այգին մշակե՞լը, արտը վարե՞լը, տուն կառուցե՞լը, դուրսըն ու ներսը մաքուր ու խնամք պահե՞լը...

Գաղտնիք չկար: Եթե կար, ապա շատ պարզ էր, որ ամեն մարդ պիտի աշխատի և իր գործն անի:

Այսպես է պատմում հեքիաթը՝ ի խրատ ծույլերի և ի փառաբանություն իրենց քրտինքով ապրողների:




## ԿՐԾՔԱՆՇԱՆԱԿԻՐՆԵՐԸ

*Մարզական հարուստ ավանդույթներ ունի Ապարանի № 2 միջնակարգ դպրոցը: Վերջին տարիներին դպրոցի սաները դահուկի հանրապետական առաջնություններում միշտ առաջին տեղն են գրավում: Այս տարի իրենց ավագ ընկերների մարզական հաջողությունները կրկնեցին Սամվել Նիկողոսյանն ու Ալվարդ Երեմյանը և դարձան հանրապետության չեմպիոններ:*

*Իսկ Ապարանի «Նիգ» ֆուտբոլային թիմի մարզական հաջողությունների մասին գիտեն ոչ միայն հանրապետությունում, այլև նրա սահմաններից դուրս: Այդ թիմի ֆուտբոլիստներից շատերը № 2 դպրոցի սաներ են: Այստեղ լուրջ աշխատանք է տարվում նաև ՊԱՊ համալիրի նորմաները հանձնելու ուղղությամբ (ֆիզկուլտուրայի ուսուցիչ Համլետ Հակոբյան):*

*Ձմեռային մարզաձևերից նորմաները հանձնող հարյուր աշակերտից 22-ը կրծքանշանակիր դարձան:*

*Սա չի նշանակում, թե մյուսները ֆիզիկապես պատրաստված չէին: Բանն այն է, որ կրծքանշանակիր դառնալու համար անհրաժեշտ է ունենալ նաև որոշակի տեսական գիտելիքներ: Համալիրի նորմաներ հանձնողները քննություն են տալիս քաղաքացիական պաշտպանություն, ֆիզկուլտուրան և սպորտը ՍՍՀՄ-ում, անձնական հիգիենիա և այլ առարկաներից:*

*Համալիրի առաջին աստիճանի նորմաները հանձնելուն մասնակցել է 114 պիոներ, որոնցից քառասունը գոհացուցիչ արդյունքներ են ցույց տվել և արժանացել ոսկե ու արծաթե կրծքանշանների:*

*Նույնպիսի հաջողության են հասել նաև համալիրի երկրորդ և երրորդ աստիճանների համար պայքարող բարձր դասարանցիները: Այժմ դպրոցի մոտ 120 աշակերտներ համալիրի տարբեր աստիճանների ոսկե և արծաթե կրծքանշանակիրներ են:*

*Դպրոցի միջանցքի պատին փակցված են տասնյակ դիպլոմներ ու պատվոգրեր: Դրանք դպրոցի առանձին աշակերտների ու թիմերի շրջանային, հանրապետական և միութենական մրցասպարեզներում տարած փայլուն հաղթանակների վկայություններն են:*

ՎԱՀԱՆ ՄԽԻԱԿՅԱՆ



# Թ Ո Ւ Թ Ա Կ Ը

(Հեքիաթ)

Ժամանակով մի մարդ կանաչ գույնի, մի շատ գեղեցիկ թութակ է ունենում: Նա թութակին սովորեցնում է «Այդ մասին կասկած լինել չի կարող» նախադասությունը: Եվ թութակը, բնականաբար, ուղած հարցին միշտ տալիս է նույն «Այդ մասին կասկած լինել չի կարող» պատասխանը:

Թութակի տերը գիշերով, գյուղի տարբեր տեղերում փող է թաղում: Հաջորդ առավոտ, իր թռչունի հետ նա շրջում է գյուղում, հայտարարելով.

— Իմ թութակը իմաստուն է, հիմա նա ինձ ցույց կտա, թե որտեղ փորեմ, որ փող գտնեմ:

Եվ յուրաքանչյուր անգամ, երբ գալիս և կանգնում էր այնտեղ, որտեղ փող էր թաղել, թութակին հարցնում էր, թե արդյո՞ք այստեղ փորելու դեպքում հնարավոր է ոսկի հայտնաբերել, թութակը տալիս էր հարկավոր պատասխանը.

— Այդ մասին կասկած լինել չի կարող:

Եվ մարդը փորփրում էր հողը, գտնում փողը ու ցույց տալիս իր շուրջը հավաքվածներին:

Մի երիտասարդ, որը ուշադիր դիտել էր թութակին ու նրա տիրոջը, մտածում է.

— Եթե կարողանամ ձեռք բերել այդ թութակը, իսկույն կհարստանամ:

Նա մոտենում և թութակի տիրոջը հարցնում է, թե ինչքանո՞վ է մտադիր ծախել թռչունը:

— Հազար ոսկի, — պատասխանում է տերը:

— Հազար ոսկի՜... դա շատ մեծ գումար է մի թռչունի համար:

— Սա սովորական թութակ չէ, մի՞թե չեք տեսնում, թե ինչքան խելացի է նա:

— Այդ մասին կասկած լինել չի կարող, — միջամտում է թութակը:

Այդ պատասխանը այնքան է դուր գալիս երիտասարդին, որ նա վճարում է պահանջված գումարը և թութակը գնում: Այնուհետև շրջում է նրա հետ, տալով նրան նույն հարցը.

— Այստեղ փորելու դեպքում փող կգտնեմ:

Եվ թութակը միշտ տալիս է իր միօրինակ պատասխանը.

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Այդ մասին կասկած լինել չի կարող:

Բայց ինչքան էլ երիտասարդը փորում է, փորփրում, ոչինչ չի գտնում:

Վերջապես, նա հասկանում է, որ թութակի տերը խաբել է իրեն:

— Օ՛հ, իմաստո՛ւն թութակ, — բացականչում է նա, — ես նոր եմ զգում, թե ինչքան հիմար եմ եղել, որ քեզ համար հազար ոսկի եմ վճարել:

— Այդ մասին կասկած լինել չի կարող, — պատասխանում է թութակը:

Երիտասարդը թութակի այս խոսքերի վրա թուլանում է ծիծաղից:

— Լա՛վ, — ասում է նա, — վերջապես, դու այս անգամ ճշմարտությունն ասացիր: Օ՛հ, իմաստո՛ւն թութակ: Ինձ մնում է աշխատել: Ինձ համար միանգամայն պարզ դարձավ, որ հարստանալու համար պետք է աշխատել:

— Այդ մասին կասկած լինել չի կարող, — համաձայնում է թութակը:

Դա երկրորդ ճշմարտությունն էր, որ ասաց թութակը:

*Անգլ. թարգմ. ՍԱՐԳԻՍ ՋԵՐՋԵՐՅԱՆԻ*

*Արտեկի հիմնադրման 50-ամյակի առթիվ*

Լ. ԿՈՆԴՐԱՇԵՆԿՈ

# ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ՇԵՓՈՐԸ

*(«Ղրիմի լեգենդները» շարքից)*

Եթե ձեր սրտում թեկուզ մի փոքր տեղ կա նոր հեքիաթի համար՝ լսեցե՛ք: Աշխարհում կա կախարդական շեփոր: Նա ամբողջովին ձուլված է արևից և փայլում է հազարավոր լուսաբացերի նման: Արևը տվել է նրան իր ամենավառ ճառագայթները, և ամեն տարի նրա արտասովոր փայլին մի նոր ճառագայթ է ավելացնում: Ահա, թե ինչու տարեցտարի շեփորն է՛լ ավելի վառ է փայլում, այնքան կուրացուցիչ, որ հին Արջ-սարը պահում է իր խոր քարանձավում, թավշյա մթության մեջ: Ոչ ոք չի կարող քարանձավ մտնել, որովհետև նրա մուտքն ամուր փակված է Արջ-սարի ծանր թաթով: Եվ դեռևս չի գտնվել այնպիսի ուժեղ մեկը, որը քարե զանգվածը շարժի տեղից:

Տարին միայն մեկ անգամ է Արջ-սարը, բարձրացնելով աջ թաթը, բացում քարանձավի մուտքը: Առաջինը ներս է մտնում վառ ճառագայթը: Նա ձուլվում է շեփորին, և շեփորը պայծառ ու զրնգուն է դառնում:

Ամեն տարի նույն օրը և նույն ժամին, երբ արևը լողանալով ծովում, սկսում է դանդաղորեն բարձրանալ Արջ-սարի վրա, ափ է վազում գանգրահեր մի տղա: Առավոտվա մեղմ քամին ծածանում է նրա կրծքին շողացող պիոներական կարմիր վզկապը: Տղան քարանձավից վերցնում է կախարդական շեփորը, մոտեցնում շուրթերին և...

Զնգում են ամպերը, քարանում անտառները, կապույտ լեռների հեռավոր կատարներին ծնվում է արձագանքը և կրկնում կախարդական շեփորի հանդիսավոր երգը:

Թռչում է այդ երգը, անցնում անտառներից և լեռներից այն կողմ, ու լսում են երեխաները՝ քաղաքներում, գյուղերում, առուներում, կիշլակներում, մեր ամբողջ երկրում:

Կախտրդական շեփորը հավաքում է նրանց Արտեկում, որտեղ ամուր ձեռքսեղմումը դառնում է բարեկամություն, ժպիտը՝ ուրախ ծիծաղ: Իսկ ընդհանուր ուրախությունը՝ մեծ տոնախմբություն:

Սլանում են գնացքները, լողում նավերը, թռչում ինքնաթիռները: Այդ երեխաներն են տարբեր տեղերից Արտեկ շտապում: Նրանք չեն կարողանում նստել տանը: Իսկ գանգրահեր շեփորահարը շեփորահարում է ու շեփորահարում դեպի կապույտ երկինքը:

Ամեն տարի նա Սև ծովի ափում հավաքում է շատ ու շատ երեխաների: Այդպես է եղել վաղուց, այդպես կլինի այսուհետև Արտեկում, որովհետև դեռևս երկրագնդի վրա երկա՜ր-երկա՜ր պետք է վառվի ուրախ արևը:

Սակայն մի անգամ ծովի վրա չտարածվեց կախարդական շեփորի երգը: Դա այն տարին էր, երբ ծխացող ճանապարհներով Ղրիմ ներխուժեցին ֆաշիստները: Նրանք սպանում էին մեծերին և փոքրերին, այրում քաղաքները, ոչնչացնում այգիները, ոտնատակ անում մեր հայրենի հողը:

Մարդկանց աչքերը խաշվել էին արցունքներից: Լեռնային առվակները և գետերը կարմրել էին արյունից: Քարերը կծկվել էին վշտից: Խանձվել էր կանաչը: Մըթագնել էր երկինքը: Մռայլվել էր ծովը: Վշտոտվել էր հողը:

Լուռ և ամայի էր արտեկյան ափը: Ո՛չ ծիծաղ էր լսվում, ո՛չ խոսակցություն, ո՛չ էլ մարդիկ էին երևում... Կարծես այստեղ Արտեկ չէր եղել...

Երբ ֆաշիստներն այստեղ եկան, գերմանական մռայլ գեներալը իր զինվորներին հրամայեց գտնել կախարդական շեփորը, հանել այն թեկուզ գետնի տակից: Այնպե՞ս էր նա ուզում տիրանալ Արտեկի գլխավոր գանձին: Նա որոշել էր հավաքել բոլոր երեխաներին և տանել գերության:

Երեք օր ու գիշեր գերմանական զինվորները տակնուվրա արեցին ամբողջ ափը: Նրանք շըրջում էին ı հին կոճղերը, նայում յուրաքանչյուր քարի տակ, բայց այդպես էլ չկարողացան գտնել քարանձավի մուտքը: Արջ-սարը թաթով ամուր փակել էր քարանձավի մուտքը: Երբ զինվորները մոտենում էին փնտրվող տեղին, Արջ-սարը թափահարում էր իր հսկա ուսերը և քարե կարկուտ տեղում զավթիչների վրա: Այդ հետքերը մինչև օրս նշմարելի են Արջ-սարի ստորոտին:

Այդպես էլ չհաջողվեց օտարերկրացիներին զավթել կախարդական շեփորը: Այդպես էլ չկարողացան փչել շեփորը, որպեսզի հավաքեն երեխաներին, սարսափելի գերության տանելու համար:

Գազազած գեներալը հրամայեց Արտեկի ննջարանները ախոռներ դարձնել: Ֆաշիստները հրկիզեցին պիոներական պալատը:

Սակայն երկար չմնացին թըշնամիները Ղրիմի հողի վրա: Հողըն այրվում էր նրանց ոտքի տակ: Եվ երբ վերջին ֆաշիստը դուրս շպրտվեց Ղրիմից, այստեղ նորից ծաղկեց նշենին: Ասում են, որ ոչ մի անգամ նշենին այդքան վառ չէր ծաղկել, ինչպես այդ գարնանը:

Իսկ երբ այգիներում աղմկեց մայիսը, Արտեկում նորից լսվեց կախարդական շեփորի ձայնը: Ասում են, որ ոչ մի անգամ նա չէր հնչել այդքան զնգուն, բարձր: Նա հավաքեց հին արտեկցիներին և նոր երեխաների հետ նրանք կանգնեցին հանդիսավոր պիոներական տողանի:

Նրանցից յուրաքանչյուրը ըզգում էր, թե ինչպես է ուրախ բաբախում սիրտը, որի խորքում հպարտ տրոփում է զարմանալի և ջերմ «Արտեկ» բառը:

— Լսեցե՛ք բոլորդ, լսեցե՛ք բոլորդ,— զնգում է շեփորը և նրա արևային կանչը լսում են հեռու ծովերից ու լեռներից այն կողմ: Նա բոլոր սերունդների արտեկցիներին հավաքում է իր տողանին:

Լցված նոր օրվա կենդանի շնչով, կախարդական շեփորը անսովոր ուժ ունի՝ ոչ միայն հավաքում է բոլոր կենդանի մարդկանց, այլև կենդանացնում է զոհված հերոսներին: Նրանք նույնպես լսում են շեփորի կանչը և շտապում գալիս կանգնում տողանի պատվավոր տեղում՝ պիոներական շարքի աջ թևում:

Թիմուր Ֆրունզե, Իվան Տուրկենիչ, Գուլյա Կորոլյովա, Վոլոդյա Դուբինին, Ռուբեն Իբարուրի, Վիտյա Կորոբկով, Ռուդիկ Ռուդնև, Լիլյա Կարաստոյանովա, Լիա Մոլդագուլովա, Գրիշա Հակոբյան... Ռուս, իսպանացի, բուլղարացի, ղազախ, հայ... Նրանք արտեկցիներ էին: Նրանք հերոսներ դարձան: Նրանց մասին գըրված են պայծառ գրքեր: Նրանց անուններով կոչված են պիոներական ջոկատներ, դրուժինաներ, դպրոցներ, մեծ և փոքր քաղաքների փողոցներ, նավեր: Նրանց անունները վառվում են ալ դրոշների վրա, հնչում են պիոներական երգերում: Նրանք միշտ պիոներական շարքերում են՝ արտեկցիները մնում են արտեկցիներ:

Ամեն տարի հունիսի 16-ին՝ ճամբարի ծննդյան օրը բոլոր արտեկցիները շարվում են հանդիսավոր տողանի: Եվ ամեն տարի լեգենդար Արջ-սարի ստորոտից դեպի կապտագույն հեռուն է ծորում կախարդական շեփորի երգը:

Թարգմ. ԱՐՏՅՈՄ ԱՆԴՐԵԱՍՅԱՆԻ



*Ոչ ոք չի մոռացվել, ոչինչ չի մոռացվել*






Բարձրահասակ, մի քիչ տխուր աչքերով պատանի էր Հրանտը: Դպրոցում բոլորը կարծում էին, որ նա անպայման նկարիչ կդառնա: Նա ծաղկազարդում էր իր բոլոր տետրերի և դասագրքերի շապիկները: Գրականության բոլոր դասերը խնամքով կոնսպեկտավորում և ձևավորում էր սեփական գունավոր մատիտներով: Իսկ գունավոր մատիտներ այն ժամանակ, այն էլ հեռավոր գյուղում, դժվար էր գտնել: Հրանտի նկարները զարդարում էին նաև դպրոցի պատերն ու պատի թերթերը:

Երբ Շամախյանում հողը քիչ-քիչ սկսում էր երևալ ձյան տակից, երբ ծառերը սկսում էին բողբոջել և քամուց օրորվելով շշնջում էին՝ գարուն է, Հրանտը առաջինն էր ելնում սարերը՝ թափառելու, փնտրում ու գտնում էր առաջին ձնծաղիկն ու առաջին մանուշակը: Չյունաթաթախ ծաղիկներն ափերի մեջ տաքացնելով, բերում էր մորը՝ Հայկանուշին, որը քսանութ տարեկանից այրիացել էր, դարձել իր չորս զավակի և՛ մայրը, և՛ հայրը, գիշերը ցերեկ անելով՝ աշխատում էր, պահում նրանց:

Երբ պայթեց պատերազմը, 17-ամյա Հրանտը եղբոր՝ Հրաչիկի, հետ մեկնեց ռազմաճակատ: Եղբայրը կռվում էր Ստալինգրադում (Վոլգոգրադ), իսկ ինքը՝ Նովոռոսիյսկում:

Նա կապավոր էր, արհամարհելով մահը, նետվում էր ամենաթեժ կռիվների մեջ, կապ հաստատում թիկունքի հետ, հաղորդում վիճակը, նոր կարգադրություններ ստանում և շարունակում առաջ շարժվել: Մարտեր մղելով, Հրանտը Նովոռոսիյսկից ուղղով հասավ մինչև Դնեպրոպետրովսկ: Ճանապարհին մարտերից մեկի ժամանակ վիրավորվեց ձախ ծնկից և ուժասպառ հասավ Դնեպրոպետրովսկի զինվորական հոսպիտալ: Այստեղից նա մորը նամակ գրեց, ոչ թե նամակ, այլ ուտանավոր-ակրոստիքոս, որով հայտնում էր. «Գտնվում եմ Դնեպրոպետրովսկում, պառկած եմ հոսպիտալում, շուտով կառողջանամ»: Դա նրա վերջին նամակն էր...

Հոսպիտալը գտնվում էր Դնեպրոպետրովսկի Մենժինկա գյուղում: Երկու հազար զինվորներ, երկու հազար քաջեր՝ հայտնի և անհայտ, բազմազգ և բազմահասակ, ապաքինվում էին այնտեղ: Սակայն մի առավոտ նենգ թշնամին հարձակվեց, և ամբողջ հոսպիտալը ավերակ դարձավ: Տարիներ շարունակ մայրը չգիտեր այդ մասին:

Մինչև անցյալ տարի մայրը սպասում էր որդուն: Ամեն անգամ վաղ գարնանը նա բարձրանում էր Դիլիջանի ձյունապատ սարերը, հավաքում առաջին ձնծաղիկն ու մանուշակը և դողդոջուն ափի մեջ տաքացնելով, իջնում գյուղ:

— Հրանտի նկարի մոտ դնելու համար է, — արդեն բոլորը գիտեին գյուղում և այլևս չէին հարցնում:

Պատերազմից հետո մենժինկովցիները նորից սկըսեցին իրենց խաղաղ կյանքը: Նրանք ամեն տուն կառուցելիս, ծառ տնկելիս, վար անելիս մի թանկարգին իր, մի տխուր հուշ, մի մասունք են գտնում. կոճակ, գդալ, կոշիկ, ձեռնոց, գլխարկ, կաթսայիկ, կոմերիտական տոմս... Գտածն հավաքում են տեղի դպրոցում հիմնած թանգարանում:

Թանգարանի ցուցանմուշներից էր նաև մնացած, ծխապատ մի կաթսայիկ: Աշակերտները մեծ դժվարությամբ կարողացան մաքրել արկերից ծակծկված, ծռմռված կաթսայիկը: Եվ ցեխի, ծխի ու վառոդի մրի տակից երևաց դաջվածքն ու մաքուր ռուսերենով գրվածը: Հրանտն էր գրել՝ նրա կաթսայիկն էր. նա իր կաթսայիկի վրա նաև նկարել էր մի պատանի ու մի աղջիկ, ժպտուն դեմքերով: Եվ բարեբախտաբար գրել էր իր անունն ու հասցեն: Քարտեզի վրա երկար փնտրելուց հետո, աշակերտները կարողացան գտնել Հայաստանի փոքրիկ Շամախյան գյուղը:

Դպրոցի դիրեկտորի նամակը փոթորկեց Հրանտի մորը և եղբորը, որը բարեբախտաբար վերադարձել էր պատերազմից, Հրանտի քույրերին, բարեկամներին, դպրոցական ընկերներին, ողջ գյուղը: Հրանտի հարազատներին հրավիրում էին հեռավոր Ուկրաինայի Մենժինկա գյուղը: Մայրը չուշացավ, շտապեց այնտեղ: Նրանց դիմավորեց ողջ գյուղը: Մայրը որդու գերեզմանին խառնեց Դիլիջանից տարած հողը, շիրիմի վրա դրեց Դիլիջանի սարերից քաղած ծաղիկները ու մի բաժակ հայոց ջուր ցանեց:

Մենժինկովցիները չմերժեցին մոր խնդրանքը, նրան նվիրեցին որդու կաթսայիկը, որ պահում էին թանգարանում: Այդ կաթսայիկով Հովսեփյան գերդաստանը հող վերցրեց Հրանտի շիրիմից, որը հայրենի Շամախյան գյուղում գերեզման դարձավ:

Հիմա արդեն սարից բերված ծաղիկները մայրը դնում է որդու կաթսայիկի մեջ:

*ԿԱՏՅԱ ՍԱՐՎԱԶՅԱՆ*

**1936** թվականին 15-ամյա Էսպերանս Բալազգյանը սկսեց հաճախել Ղուկաս Ղուկասյանի անվան պիոներների պալատի քանդակագործական խմբակի պարապմունքներին: Պատանին ուշադրությամբ հետևում էր իր վարպետի՝ քանդակագործ Սամվել Մանասյանի յուրաքանչյուր շարժումին, սիրով կատարում նրա բոլոր ասածները:

Մի օր էլ խմբակի սաները հանձնարարություն ստացան կրկնօրինակել Միքելանջելոյի «Դավիթ» արձանը: Էսպերանսին բաժին էր ընկել քանդակել «Դավթի» աչքերը: Երբ քանդակն արդեն պատրաստ էր, բոլորը սպասում էին վարպետի խոսքին: Իսկ նա ուշադրությամբ զննելով յուրաքանչյուր մանրամասն, նայեց քանդակած աչքերին և ձեռքը դնելով Էսպերանսի գլխին ասաց.

— Ապրե՛ս, Էսպերա՛նս:

Իսկ իր մեջ մտածում էր. «Այս տղայից մեծ քանդակագործ դուրս կգա»: Դա էր հաստատում նաև «Վոլեյբոլիստը» քանդակը, որը զարմացնում էր շարժման զգացողությամբ:

«Սասունցի Դավիթ» էպոսի 1000-ամյակը քանդակագործական խմբակի սաները որոշեցին դիմավորել հիասքանչ հայկական էպոսին նվիրված քանդակաշարով: Էսպերանս Բալազգյանը քանդակում էր Դավթի արձանը, նիզակը ձեռքին, դեմքի վճռական արտահայտությամբ: Երբեմն ընդհատում էր միայն ղեկավարից խորհուրդներ հարցնելու համար:

— Վարպե՛տ, ինչպե՞ս քանդակեմ. սաղավարտո՞վ, թե՞ առանց սաղավարտի:

«Յունի խուդոժնիկը» 1940 թվականի իր առաջին համարում այդ քանդակի մասին գրեց. «Էսպերի Դավիթը լի է անտիկ գեղեցկությամբ և պարզությամբ: Երևում է, որ հեղինակը քաջ ծանոթ է քանդակագործության դասական գործերին և իր ստեղծագործությունների մեջ աշխատում է օգտագործել անտիկ մեծ քանդակագործների ավանդույթները: Դասականությունը պատանի հայ քանդակագործի աշխատանքներում հիանալիորեն զուգակցվում է կերպարների խոր ռեալիստականությամբ և համոզչականությամբ: Բալազգյանի քանդակի մեջ, անտիկ զինվորի արտաքինի տակ երևում է հայկական դիմագծերով պատանին»:

Այս աշխատանքը համամիութենական մրցանակաբաշխությունում արժանացավ առաջին կարգի մրցանակի:



## ԶՈՀՎԵԼ Է ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ

Ուշագրավ աշխատանքներ էին ներկայացրել նաև մյուս պատանի քանդակագործները:

Հոբելյանից հետո պատանիները առաջադրանք ստացան քանդակներ պատրաստել համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի համար: Նրանք սիրով անցան գործի: Ղուկաս Չուբարյանը պատրաստում էր երիտասարդ հովվի արձանը: Սիլվա Մնացականյանը՝ «Գառնուկով տղան» կոմպոզիցիան: Էսպերանսը մտահղացել էր քանդակել մրգեր հավաքող կոլտնտեսուհուն: Սակայն այդ մտահղացումը վիճակված չէր իրագործվել: Շուտով նա զորակոչվեց բանակ, իսկ մեկ տարի անց սկսվեց Մեծ հայրենականը: Էսպերանսը իր քանդակագործական բրիչը փոխարինեց զենքով, գնաց մարտնչելու ֆաշիստների դեմ:

Ծանր օրեր էին: Սովետական զորքերը դժվարին մարտեր էին մղում Օդեսայի համար: Երկինքը հեղեղված էր ինքնաթիռներով: Արձակած արկերի և ռումբերի պայթյուններից երկիր ու երկինք խառնվել էին իրար: Էսպերանսը տեսավ, թե ինչպես թշնամու ռումբերից մեկը ընկավ օպերայի շենքի վրա: Երբ մարտը դադարեց, նա շտապ քայլերով մոտեցավ ավերված շենքին: Փլատակների տակ երևում էին կոտրված արձանների բեկորներ: Մի պահ տխուր հայացքով նայեց շուրջը: Պատերազմի այս դաժան պահին նրա մեջ խոսեց արվեստագետի ոգին, նա սկսեց հավաքել բեկորները: Ընկերները տարակուսանքով նայում էին նրան:

— Ափսոս են, հարկավոր է վերանորոգել:

Նկուղում գտավ գիպսի փոշիով լի պարկեր: Ժամանակը թանկ էր, հարկավոր էր շտապել: Շուտով նոր հարձակում կսկսվեր: Եվ այդպես էլ եղավ: Դեռ նոր էր հասցրել վերակենդանացնել մի քանի արձաններ, երբ լսվեցին ռումբերի նոր պայթյունների ձայներ: Նորից զենք վերցրեց և գնաց կատաղի մարտերում պաշտպանելու հայրենի երկիրը, արվեստը, այդ արդար և բարի արձանները:

Նա ընկավ այդ մարտում:

Երևանի Ղ. Ղուկասյանի անվան պիոներների և դպրոցականների պալատի քանդակագործական արվեստանոցում բազմաթիվ նոր քանդակների կողքին խնամքով պահպանվում են նաև հները: Նրանց հեղինակներից շատերը այժմ ճանաչված քանդակագործներ են դարձել: Այդտեղ է նաև Էսպերանս Բալազգյանի «Սասունցի Դավիթը»՝ նրա տաղանդի անխոս վկան:

Ա. ՄԵԼՔՈՆՅԱՆ

# ՕՐՆ ՍԿՍՎՈՒՄ Է ԼՈՒՍԱԲԱՑՈՎ

ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑ

ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

*Նոյեմբերյանը մեր Հանրապետության հեռավոր շրջաններից է։ Սակայն ինչպես ամենուր, Նոյեմբերյանի պիոներ-դպրոցականներն էլ ապրում են բովանդակալից ու հետաքրքիր առօրյայով, որի մասին և պատմվում է ստորև տպագրվող հոդվածաշարքում։*

## ՈՐ ԹԱՐՄ ՄՆԱՆ ԾԱՂԻԿՆԵՐԸ

Կողբի № 1 միջնակարգ դըպրոցը կրում է իր նախկին սան, Սովետական Միության հերոս Ջահան Կարախանյանի անունը: Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատներում մարտնչել են 750 խիզախ կողբեցիներ: Շատերը պարգևատրվել են մեդալներով ու շքանշաններով, իսկ Ջահանը դարձավ հայ ժողովրդի պանծալի զավակներից մեկը: Այս է պատճառը, որ դպրոցի պիոներական աշխատանքներում կարևոր տեղ է գրավում Հայրենական մեծ պատերազմում տարած հաղթանակի պատմության, մասնավորապես՝ պատերազմին համագյուղացիների մասնակցության ուսումնասիրությունը: Դպրոցում ստեղծվել է հատուկ անկյուն, որտեղ ցուցադրված են համագյուղացի ռազմիկների լուսանկարները, կենսագրական և այլ նյութեր: Հաճախակի հանդիպումներ են կազմակերպվում պատերազմի վետերանների հետ, որոնք պատմում են իրենց մարտական ուղու մասին:

Դպրոցի բակում բարձրացվել է Ջահան Կարախանյանի կիսանդրին, Կողբի կենտրոնում՝ անմահների փառքի հուշարձան և Տղկուտ Բագեր բացատում՝ հիշատակ-աղբյուր, որոնց խնամքը վերցրել են պիոներները: Նրանք խնամում են նաև լեյտենանտ Սերյոժա Աղաբաբյանի սենյակ-թանգարանը, որը ստեղծել է զոհվածի եղբայրը:

«Կարմիր հետախույզներ» ջոկատի անդամներ Արամաշխը, Սուսաննան, Գոհարը, Գագիկը, Հաչիկը, Միրանուշը, Արամը և մյուսները օրինակ են հանդիսանում բոլորի համար: Նրանք որոնումները շարունակում են, քանի որ ոչ ոք չպետք է մոռացվի և ոչինչ չպետք է մոռացվի:

## ՀՈՂԻ ԿԱՆՉԸ

Շրջանի փոքր, բայց ճանաչված գյուղերից է Արճիսը: Նրա հռչակն առանձնապես նըպաստել է դպրոցի աշակերտական-արտադրական բրիգադը: 1947 թվին դպրոցում ստեղծվեց համկախավաքի օղակ, որը պետք է օգներ պետական տնտեսությանը: Օղակի աշխատանքը այնքան արդյունավետ եղավ, որ այն շարունակեց գործել հաջորդ տարիներին: Այնուհետև, տնտեսության զարգացման և ընդլայնման հետևանքով, պահանջ զգացվեց մեծացնել օղակը և փոխել նրա աշխատանքի բնույթը: 1963 թվին կազմավորվեց աշակերտական արտադրական բրիգադը, որի անփոփոխ ղեկավարն է ուսուցիչ Սամադ Ալավերդյանը:

Ամռան հետ սկսվում է դպրոցի 5-րդ՝ աշխատանքային քառորդը: Միայն անցած տարի աշակերտական արտադրական բրիգադը հավաքել է 355 հեկտար տարածության խոտ, տեղափոխել անասնաշենքերի մոտ, սենաժ պատրաստել: Մաքրել են 50 հեկտար խաղողի այգի, քաղհան արել, փխրեցրել հողը, ստացել 300 տոննա խաղողի բերք: Բացի այդ, մշակել են 25 հեկտար եգիպտացորենի դաշտ, 550 տոննա սալոր ու դեղձ հավաքել: Բրիգադը նաև պատվաստներ է կատարել անտառի վայրի մրգատու ծառերին, հսկողության տակ վերցրել եղևնու ծառերը, նոր ծառեր տնկել գյուղում: Աշակերտական-արտադրական բրիգադը շահել է ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշը, իսկ բրիգադի ղեկավար Սամադ Ալավերդյանը պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

Բրիգադը աշխատանք է կատարում ոչ միայն ամռանը, այլև տարվա բոլոր եղանակներին: Աշխատելուն զուգընթաց, բրիգադի անդամները մասնակցում են երգի ու թատերական խմբերին, սպորտային մրցություններին: Իսկ արձակուրդների ժամանակ մեկնում են էքսկուրսիաների՝ Մոսկվա, Լենինգրադ, Սոչի, Թբիլիսի, Բաքու, Պյատիգորսկ...

Ամեն տարվա հետ փոփոխություն է կրում բրիգադի կազմը, բայց անփոփոխ է մնում նշանաբանը. աշխատասիրություն, ընկերասիրություն, առաջադիմություն միշտ և ամենուր:



## ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՀԱՆԴԵՍ

Տասնմեկ ազգության երեխա է սովորում Բագրատաշենի Բագրատ Վարդանյանի անվան № 1 միջնակարգ դպրոցում. հայ, ռուս, ուկրաինացի, վրացի, ադրբեջանցի, գերմանացի, թաթար, հույն.. Եթե թվենք նաև Սովետական Միության հանրապետություններում ու սոցիալիստական երկրներում եղած բազմաթիվ բարեկամներին, որոնց հետ նրանք կապերի մեջ են, ապա պատկերը լրիվ կլինի: Այս ամենին կարող եք ծանոթանալ դըպրոցի ինտերնացիոնալ բարեկամության ակումբի սենյակում, իսկ եթե ավելի մանրամասն ուզեք իմանալ, ակումբի անդամներ Գայանեն, Մարինեան, Վիլին, Լեյլան, Գագիկը, Լիան, Սվետան և մյուսները կարող են սիրով պատմել և՛ նամակների, և՛ հուշանվերների, և՛ այցելությունների մասին: Կպատմեն ոչ միայն իրենց հեռավոր բարեկամների, այլև նրանց բնակավայրի՝ գյուղի, քաղաքի, հանրապետության ու երկրի պատմության, արվեստի, սպորտի մասին: Իսկ եթե հարցնեք, թե ակումբի գործերից որն է առավել տպավորիչ եղել, նրանք կպատմեն բարեկամության հանդեսի մասին:

Սովետական Միության 50-ամյակին նվիրված այդ հանդեսը անցկացվեց Կարմիր կամրջին սահմանակից հողում: Մասնակցում էին անդրկովկասյան երեք հանրապետությունների պիոներներ: Վրաստանից՝ № 109 հայկական և № 117 վրացական դպրոցների, Ադրբեջանից՝ Ղազախի Ս. Վուրղունի անվան դըպրոցի, Հայաստանից՝ Նոյեմբերյանի շրջկենտրոնի, Բագրատաշենի և Ղալաչայի դպրոցների: Այդքան բարեկամների հանդիպումը չի կարող տոն և ուրախություն չլինել: Իրար էին հաջորդում երեք ազգերի երգերն ու պարերը, արտասանություններն ու խաղերը: Ամեն դպրոց ու պիոներ ցուցադրում էր իր շնորհքն ու ընդունակությունը: Եվ այդ մրցությունում պարտվող չկար, քանի որ հաղթանակը ընդհանուր էր, հաղթողը՝ բարեկամությունը:

## ԳԵՐԵԴԻ ԱՓԻՆ

Հազարավոր տարիներ առաջ, վաղ և միջին բրոնզե դարերում, Այրում ավանի շրջակայքում եղել է մարդաշատ բնակավայր: Այս մասին է պատմում Այրումի միջնակարգ դպրոցի պիոներների ստեղծած հնագիտական թանգարանը: Պատանի հնագետները փնտրել ու գտել են հավվագյուտ կավե կճուճներ, բրոնզե կացին, մանգաղ, նիզակի սայր, այլ և այլ իրեր, խնամքով դասավորել միջանցքի հատուկ պահարաններում: Ցուցադրելուց բացի, նրանք մանրամասնորեն կարող են պատմել յուրաքանչյուր իրի պատրաստման ու նշանակության մասին:

Անցած տարի աշխատելով պահածոյի գործարանում, դպրոցի աշակերտները պատրաստել են 5 միլիոն տուփ պահածո: Հավաքել են 10 տոննա մետաղի ջարդոն, կապերի մեջ են գտնվում ԲԱՄ-ի շինարարների հետ, ակտիվորեն մասնակցում են «Միլիոն՝ հայրենիքին» օպերացիային, աչքի են ընկել «Տղա ու աղջիկ», «Ոսկե աշուն», «Գիտելիքների աշխարհում» միջոցառումների և «Ջահ» արվեստի ակումբի աշխատանքներում: Հիշարժան է և լոռեցիների պուրակի խնամքը, որ նրանք իրենց վրա են վերցրել:

Այս դեռ բոլորը չէ: Այրումի պիոներները վաղը հեղինակ կլինեն ուրիշ շատ և շատ աչքի ընկնող գործերի:

## ԳԻՇԵՐ

*ԺԻՐԱՅՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ*

**Աստղիկներ են ուրախ փայլում**
**Լուսամուտից,**
**Քամին ինչ-որ երգ է սուլում**
**Կիսամութից,**
**Շշնջում են իրար փարված**
**Ծառերն այգում,**
**Ու հեքիաթ է պատմում կամաց**
**Առուն անքուն...**

**Քնի՛ր, բալի՛կ իմ անմեղ,**
**Իզուր ես դու ականջ դնում,**
**Այս հեքիաթը՝ առվի նման**
**Չի վերջանում:**

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*



# ԱՎԵԼԻ ԶԱՐՄԱՆԱԼԻ

ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ

Ֆրանսիացի ֆիզիկոս, աստղագետ, մաթեմատիկոս և բնախույզ Դոմինիկ Ֆրանսուա Արագոն 19-րդ դարի սկզբին «Որոտ և կայծակ» վերնագրի տակ լույս աշխարհ հանեց փաստերի և վկայությունների մի ամբողջ գիրք: Իսկ ինչի՞ մասին էր պատմում այդ գիրքը: Բանն այն է, որ Արագոն իսկական գիտնականին վայել բծախնդրությամբ հավաքեց և համակարգեց որոտին ու կայծակին վերաբերող յուրաքանչյուր տեղեկություն: Նա դրա համար դիմեց բոլոր ֆրանսիացիներին և շուտով ստացավ նամակների մի ամբողջ շեղջ: Նամակագիրները տարբեր զբաղմունքի և մասնագիտության տեր մարդիկ էին և նրանցից յուրաքանչյուրը գրում էր իր տեսած կայծակի և որոտի մասին:

Արագոն չշտապեց եզրակացություններ հանել, քաջ գիտակցելով մի բան, որ գիտության զարգացման համար շատ ավելի կարևոր են դիտողական և փորձարարական փաստերը, քան հավանական և անհավանական եզրակացությունները:

Արագոյի հասցեով ստացվող նամակներից ամեն մեկը իր հետաքրքրությունն ուներ և իր առանձնահատկությունը:

Մի տիկին, օրինակ, գրում էր. «Այդ ամենը շարունակվեց մոտ մեկ րոպե, տեսարանն այնքան գեղեցիկ էր, որ ես նույնիսկ մոռացել էի վտանգի մասին և պատրաստ էի բացականչել.

— Օ՜, ի՜նչ հրաշալի է:

Հարվածն այնքան ուժեղ էր, որ այս ու այն կողմ շպրտեց երեք մարդու... խոհանոցում գտնվող խոհարարուհիս քիչ մնաց խեղդվեր, բարապանուհու ձեռքից վայր ընկավ և կոտրվեց սպասքը: Կայծակի ճառագայթներից մեկը վիրավորեց գիշերօթիկ դպրոցի ուսուցչուհուն:

Ես երջանիկ էի, որ ականատես էի այդպիսի զարմանալի և հրաշալի տեսարանի»:

Իհարկե, քաղքենի տիկնոջ հոգեբանությունը չէ, որ հետաքրքրում էր Արագոյին, այլ՝ փաստի հավաստիությունը:

Տիկնոջ ռոմանտիկ շնչով գրված նամակի հակապատկերն է թոշակառու գնդապետի նամակը. «Պարո՛ն Արագո, ես տեսա գնդաձև կայծակի պայթյունը: Նրա անհետացումն ուղեկցվում էր աղմուկով և նման էր 25 մղոն հեռավորության վրա քամուն հանդիման կրակող 36 ֆունտանոց թնդանոթի կրակոցի»:

Ինչպես տեսնում եք, գնդապետը հասել է շարադրանքի դասագրքային պարզության. ժամանակակից գրքերում հենց այդպես էլ գրվում է. կայծակի պայթյունն ուղեկցվում է աղմուկով և...

Եթե սրան ավելացնենք, որ նամակներից եկող շատ փաստեր կարելի է ընդունել ուղղակի որպես գիտական ձևակերպումներ, ապա պարզ կդառնա, թե Արագոն որքան հեշտացրեց իր գործը՝ հանդես գալով հիմնականում փաստերը ընտրողի, դասակարգողի դերում:

Այս պնդումը հաստատելու համար բավական է գնդապետի նամակի կողքին դնել նաև մի սառնասիրտ և դիտողական ընդունակությամբ օժտված երիտասարդի նամակ. «Հանկարծ փողոցի մեջտեղում փայլատակեց աճռելի կայծակը, որին ակնթարթորեն հետևեց հրետանային համազարկ հիշեցնող հարվածը: Ինձ թվաց, թե մի ահռելի ռումբ պայթեց փողոցում: Այդ հարվածը չդանդաղեցրեց իմ առաջխաղացումը: Ես իջեցրի գլխարկս, որը էլեկտրական պայթյունը և քամին ետ էին տարել, և առանց արկածների հասա հրապարակ»:

Պետք է նշել, որ կայծակների դասակարգման առաջին փորձն Արագոյին չի պատկանում: Նրանից դեռ շատ դարեր առաջ հին հռոմեացիները կայծակները բաժանել էին «ըստ ճակատագրի»: Դրանք կոչվում էին ազգային, ընտանեկան, անհատական, ինչպես նաև նախազգուշացնող, ինչ-որ մեկի տիրապետությունը վավերացնող, պատժող և այլն:

Հույները բավական ճիշտ էին պատկերացնում կայծակի մի շարք հատկությունները: Այսպես, օրինակ, Արիստոտելը գտնում էր, որ կայծակը «հատուկ սեր» ունի դեպի մետաղը: Դա հաստատելու համար Արիստոտելը վկայակոչում է այնպիսի մի փաստ, որը հայտնի էր հույն և հռոմեացի յուրաքանչյուր վահանակիր ռազմիկի. «Վահանի պղնձյա մասը հալվում է կայծակից, իսկ փայտյա մասը մնում է անվնաս»,— գրում է Արիստոտելը:

Նույնն է հաստատում նաև Ներոնի դաստիարակը, փիլիսոփա Սենեկան. «Պայուսակի մեջ գտնվող արծաթը հալվում է, իսկ պայուսակը մնում է անվնաս»:

Անհիշելի ժամանակներից մարդկությունն ականատես և ունկնդիր է կայծակի պատճառած վնասներին: Եթե թողնենք հին ձեռագրերում հանդիպող բազմաթիվ այդպիսի դեպքերի նկարագրությունները և բավարարվենք միայն նոր և նորագույն ժամանակների դեպքերով, ապա կարելի է մեկը մյուսի ետևից

# ՔԱՆ ԱՐԱԲԱԿԱՆ ՀԵՔԻԱԹԸ

## ԱՎԵԼԻ ԶԱՐՄԱՆԱԼԻ,

*թվարկել այնպիսի դեպքեր, ինչպիսիք են, օրինակ, 1773-ին Բրիտանում տեղի ունեցած կայծակի պայթյունը, որի ժամանակ կործանվեց 24 զանգակատուն, 1718-ի պայթյունը Լոնդոնում, որը կործանեց սուրբ Միքայելի զանգակատունը: Հետաքրքիր է նշել, որ 1762-ին Կորնեուլում կայծակը հարվածեց Բրիգյան եկեղեցու զանգակատանը և հարավարևմտյան գմբեթը վերածեց առանձին կտորների, որոնցից մեկը, որի կշիռը մոտ 50 կգ էր, եկեղեցու տանիքի վրայով թռավ մոտ 50 մետր, իսկ մեկ այլ ավելի փոքր կտոր՝ շուրջ 400 մետր:*

*1769-ի օգոստոսի 18-ին Իտալիայի քաղաքներից մեկում կայծակը տակնուվրա արեց մի բերդ, ուր պահվում էր վառոդի մեծ պաշար (1030 տոն): Պայթյունը սարսափելի էր. բերդն ամբողջությամբ օդ էր բարձրացել, զոհվեց մոտ երեք հազար մարդ:*

*Մեր ժամանակներում նման աղետներ, իհարկե, տեղի չեն ունենում, քանի որ կայծակից պաշտպանվելու համար ձեռք են առնվում բոլոր հնարավոր միջոցները: Բայց դա չի նշանակում, թե կայծակը լրիվ սանձված է: Ոչ, դրա մասին խոսելը դեռ վաղ է: Ամեն տարի, օրինակ, ամերիկյան անտառներում տեղի է ունենում 7500 հրդեհ: Բայց փաստը մնում է փաստ, որ մեր օրերում կայծակի վտանգավորության աստիճանը հասցված է նվազագույնի:*

*Կայծակների դասակարգման ժամանակ Ֆրանսուա Արագոն մարդկության պատմության մեջ առաջինը առանձնացրեց գնդաձև կայծակը: Կայծակի այդ տեսակը մինչ այդ չէր դիտվում որպես առանձին երևույթ, այն ընդունվում էր որպես սովորական կայծակ և ուշադրություն չէր դարձվում նրա առանձնահատկություններին: Իսկ նրա առանձնահատկությունները իրականում տարբերվում են սովորական կայծակի առանձնահատկություններից: Գնդաձև կայծակի առաջին նկարագրողներից մեկը՝ ֆրանսիացի աստղագետ Քամիլա Ֆլամարիոնը գրում է. «Մենք ընկնում ենք հրաշքների աշխարհը. ավելի զարմանալի, քան արաբական հեքիաթներում նկարագրվածը, ավելի խճճված, քան լաբիրինթոսը— վիթխարի և ֆանտաստիկ աշխարհ»:*

*Հիրավի, գնդաձև կայծակի առաջին նկարագրությունները շատ հետաքրքրական են և միշտ չէ, որ համընկնում են ավելի ուշ շրջանի ուսումնասիրությունների հետ կապված նկարագրություններին: Ֆլամարիոնի «Ատմոսֆերա» գրքում նկարագրված գնդաձև կայծակների թիվը մեծ է, բայց ցավալի է, որ գիտնականը այն շփոթել է երկնաքարերի անկման երևույթի հետ: Գնդաձև կայծակների ուսումնասիրման պրոցեսը դեռևս շարունակվում է. նրանց բնույթի մասին արված գիտական լուրջ հետազոտություններն ու վարկածները հիմք չեն տալիս առայժմ ամփոփելու և սպառիչ խոսք ասելու նրանց էության մասին:*

## ՔԱՆ ԱՐԱԲԱԿԱՆ ՀԵՔԻԱԹԸ

# ՍՊԻՏԱԿ ԾՈՎԻ ՀԵՔԻԱԹԸ

*Բ. ԼԻԼԻՄՅԱՆ*

Սպիտակ ծովում, Օնեգա քաղաքից քիչ հեռու, կա մի կղզյակ՝ Կիյ անունով: Ցամաքի այդ փոքրիկ կտորը (երկարությունը՝ 1 կմ, լայնությունը՝ 0,5 կմ) վերջին տարիներս ավելի ու ավելի է հրապուրում զբոսաշրջիկներին:

Իրոք, այդ կղզյակը մի փոքրիկ հրաշալիք է սառն ու մռայլ ծովում: Վերցնենք թեկուզ նրա անվանումը: Տարեգրությունը հաստատում է, որ 1639 թվին ռուսաց պատրիարք Նիկոնը դեպի Սոլովեցկյան կղզիները ուղևորվելիս, փոթորկի է հանդիպում: Ալիքները երկար ժամանակ տարուբերում են նրա նավը, մինչև որ վերջապես նետում են ինչ-որ ամայի կղզի:

— Կի՞յ օստրով (ո՞ւմ կղզին է), — ըստ ավանդության, — հարցրել է նա: Եվ կղզու անունը մնացել է Կիյ:

Կիյը մի վիթխարի գրանիտե ժայռապանգված է ծովում: Այստեղ-այնտեղ աճում են փոքրիկ, թեքված սոճիներ: Ափից որքան հեռանում ես, սոճիներն այնքան ուղիղ և սլացիկ են դառնում, այնուամենայնիվ այստեղ էլ հաճախ են հանդիպում ծովային քամիներից և ժամանակից աղանդակված սոճու բներ՝ երկինք պարզած չոր ճյուղերով: Դրանց կողքին երբեմն հանդիպում են սնձենիներ՝ խոշոր, վառ կարմիր պտուղների ողկույզներով:

Այստեղ շուրջ-բոլորը քար է: Ծովային քամին ու ջուրը հղկել-կոկել են դրանց մակերեսը, և երբեմն թվում է, թե ափին պառկած են ինչ-որ ծովային հրեշներ: Բայց երբ մոտենում ես, տեսնում ես, որ դրանց կողքերին աճել է մամուռը՝ քմահաճ երանգներով. մերթ՝ տարօրինակ կարմիր, մերթ՝ դեղնավուն:

## ԹԵՎԱՎՈՐ ԽՈՍՔԵՐ

### ԱՍՏՐԵԱՅԻ ԴԱՐԸ

«Աստրեայի դար» արտահայտությանը այժմ դուք կարող եք հանդիպել միայն հնագույն գրքերում, այն էլ՝ հազվադեպ, կենդանի խոսքի մեջ գրեթե չեք լսի, դրա փոխարեն ասվում է «ոսկեդար»: Հնադարյան առասպելներում Աստրեան արդարության աստվածուհին էր, աստվածների հոր՝ Զևսի և արդարադատության աստվածուհի Թեմիսի դուստրը: Չհանդուրժելով մարդկային չարագործությունները, աստվածուհին, որ առաջ ապրում էր երկրի վրա, ուր ծնողներն ուղարկել էին, որպեսզի օգնի մարդկանց ազնիվ և արդար ապրելու, համբառնում է երկինք: Այստեղ նա Կույս անվամբ շողում է Զոդիակի համաստեղության մեջ: Այդ ժամանակ էլ հենց վերջանում է «Աստրեայի դարը», «ոսկեդարը» — երջանկության հեքիաթային ժամանակները:

Ավելի ուշ այս արտահայտությամբ բնութագրում էին կյանքի երջանիկ շրջանը, հրճվանքի շրջանը:

### ԻՄԱՍՏՈՒՆ ԿԱՍԱՆԴՐԱՆ

Կասանդրան Տրոյայի արքա Պրիամոսի գեղանի դուստր անունն էր: Ինքը՝ արևի արքա Ապոլոնն էր հրապուրվել նրանով և օժտել նրան գուշակելու կարողությամբ: Բայց Կասանդրան մերժում է նրա սերը: Իբրև պատիժ Ապոլոնն անում է այնպես, որ աղջկա գուշակություններին ոչ ոք չի հավատում: Ողբալի էր գուշակուհու ճակատագիրը: Նա կանխագուշակում է, որ Տրոյան պետք է կործանվի փայտե ձիու պատճառով, որը քաղաքին պիտի նվիրեն դանայացիները: Նրան չեն հավատում, և Պրիամոսի թագավորությունը կործանվում է: Նա իր տիրակալ Ագամեմնոնին կանխագուշակում է մահ՝ իր իսկ կնոջ ձեռքով: Նրան չեն հավատում, իսկ դա այդպես էլ լինում է:

Իհարկե, սրանք առասպելներ են, բայց մեծ է ժողովրդական առասպելների ուժը: Եվ ահա, գրեթե երեք հազար տարի է, ինչ ամբողջ աշխարհում, այլև սրդեն ոչ առանց հեգնանքի, «Կասանդրա» են կոչում բոլոր նրանց, ովքեր իրենց վրա են առնում ապագան «գուշակելու», քիչ հավանական թվացող աղետների գուշակողի դերը:

Դեպի կղզին անսովոր տեսարան է բացվում հատկապես Սիրտ ժայռից: Բարձրանալով տասնհինգմետրանոց ժայռի վրա, կարելի է երկար-երկար դիտել ալիքների խաղը: Տեղատվության ժամերին ջուրը ափին թողնում է հազարավոր երփներանգ խխունջներ, ծառերի ֆանտաստիկ արմատներ ու ճյուղեր:

Գալիս է «մեծ» ջուրը, և ափն սկսում է աշխուժանալ: Նավակներն ու փոքրիկ ձկնորսանավերը բարձրանում են ծանծաղուտից: Ովքեր ուզում են բաց ծով



դուրս գալ, շտապում են օգտվել մակընթացության ժամերից: Այդ պահին տեսանելի են դառնում Կիլյին մոտիկ երեք այլ կղզիներ: «Փոքր» ջրի ժամերին դրանց չես կարող տարբերել: Հիմա պետք է հյուր գնալ հարևաններին, միայն թե հիշելով մի բան. եթե ժամանակին չհասցնես վերադառնալ, հարկ կլինի դարձյալ վեց ժամ սպասել, մինչև հաջորդ մակընթացությունը:

Կիլը մշտական հակադրությունների կղզի է: Ամեն րոպե այստեղ բացվում են նորանոր պարմանալի տեսարաններ:

Քարերի ու ռոճիների այդ հրաշալի աշխարհում ամենից հաճախ լռություն է տիրում: Զարմանալի լռություն, որտեղ երբեմն լսվում է քամուց տագնապահար չոր ճյուղերի խշշյունը: Եվ միայն ծովի վեհապանծ սիմֆոնիան է ժամանակ առ ժամանակ խախտում այդ լռությունը:

# ՃԱՆԱՉԻՐ ԻՆՔԴ ՔԵԶ

*Ե. Ի. ՍԱՎՈՆԿՈ*

*(Հոգեբանական գիտությունների թեկնածու)*

*«Հաշվի՛ր, օրվա մեջ քանի՞ անգամ ես վիրավորվում, ո՞ւմից և ինչո՞ւ»: Մի վեցերորդ դասարանում մենք այս հարցը տվինք բոլորին: Պարզվեց, որ քառասուներեք հոգուց միայն տասը չկարողացան հիշել ոչ մի դեպք, որ լրջորեն վիրավորված լինեն որևէ մեկից, տասնյոթը վիրավորվել էին օրվա մեջ մեկ անգամ: Մնացած տասնհինգը՝ օրվա մեջ հաշվում էին երեքից-չորս վիրավորանք: Մեկն էլ հրաժարվեց պատասխանել հարցին. «Դա իմ գործն է»,— ասաց նա:*

*Նեղացկոտության ռեկորդ սահմանեց մի աղջիկ՝ Գալյան, նա նեղանում է հաճախ: Ո՞ւմ վրա: Աղջիկների վրա ու տղաների վրա, ուսուցիչների վրա, դասղեկի վրա և ավագ ջոկատավարի վրա, հանդերձապահուհու վրա և իր փոքր քրոջ վրա: Ինչի՞ համար: Այդ հարցին Գալյան չպատասխանեց:*

*Գալյան դժվարությամբ է լեզու գտնում երեխաների և ուսուցիչների հետ, նրանք էլ՝ իր հետ: Մի փոքրիկ բան, և վիրավորվում է, ինքն իր մեջ փակվում, լաց լինում: Ես խնդրեցի Գալյային մտածել, թե ինչո՞ւ նրա հարաբերությունները մարդկանց հետ հարթ չեն ընթանում, փորձել այդ բոլորի համար մեղադրել ո՛չ թե մյուսներին, այլ ազնվորեն, առանց իր նկատմամբ մազաչափ ներողամտության, փորձել կատարվածի պատճառները քննել:*

*Շատ դժվար է կողմնակի աչքով նայել իրեն, և ես որոշեցի օգնել Գալյային: Ես հարցեր տվեցի նրան, իսկ նա պատասխանեց, և աստիճանաբար մենք պարզեցինք, որ տանը և դպրոցում, երբ Գալյան ցածր դասարանում էր, նրան շարունակ գովում էին, հետո հանրահաշվից սկսեց կաղալ, լսողությունն էլ դուրս եկավ, որ լավ չի, երգեցողության դասին երգելիս սխալվում էր: Հանդես եկան դժվարություններ, և Գալյան չկարողացավ հաղթահարել դրանք, սկսեց մտածել, որ վատ են վերաբերվում իրեն, ու վիրավորվում էր:*

*Հոգեբանները գտել են, որ վիրավորվելը հանդես է գալիս այն ժամանակ, երբ ցանկացածը չի համապատասխանում իրականությանը: Հույս ունեիր լավ թվանշան ստանալ, նշանակում են «երեք», այն դերը, որ սպասում էիր, տվեցին ուրիշի:*

*Կարծում էիր երեխաները կկանչեն խաղալու, նրանք չկանչեցին: Հանդիպելով դժվարությունների, անհաջողությունների, մարդիկ տարբեր վերաբերմունք են ունենում կատարվածի նկատմամբ: Ամեն մեկն, իհարկե, ուզում է հասնել հաջողության, զգալ իրեն ուժեղ, բայց, եթե այդ չի լինում, նեղացկոտ մարդիկ*

---

## «ՈՒՇԱԴԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՄՐՑՈՒՅԹ-74»-Ը ԱՎԱՐՏՎԱԾ Է



Խմբագրությունն ամփոփեց «Ուշադիր ընթերցողների մրցույթ-74»-ի արդյունքները: Երկու փուլերի հարցերին շատերն էին ճիշտ պատասխանել: Սակայն մրցանակներ շնորհվեց նրանց, ովքեր առավել հանգամանորեն ու խնամքով էին գրել պատասխանները:

Առաջին մրցանակին արժանացավ Սիլվա Մելիքյանը (Լենինական, № 9 դպրոց, 7-րդ դաս.):

Երկրորդ մրցանակը շնորհվեց Աշոտ Խաչատրյանին (Երևան, № 93 դպրոց, 8-րդ դասարան) և Սոնյա Բրոյանին (Վրաց. ՍՍՀ, Բոգդանովկայի շրջ. գ. Սատխի, 9-րդ դասարան):

Երրորդ մրցանակը շնորհվեց Օկսաննա Եմենջյանին (Երևան, № 139 դպրոց, 7-րդ դասարան), Մարգարիտ Մնեյանին (Կամոյի շրջ. գ. Լանջաղբյուր, 8-րդ դաս.) և Վարդան Մամյանին (Նոյեմբերյան, № 1 դպրոց, 9-րդ դասարան):

Մրցույթի երկու փուլերի արդյունքով՝ խրախուսական մրցանակի արժանացան Ռուզաննա Ավետիսյանը (Երևան, № 51 դպրոց, 8-րդ դաս.), Արմեն Ադամյանը (Լենինական, № 15 դպրոց, 9-րդ դասարան), Դիզուհի Էլմասակյանը (Երևան, № 60 դպրոց, 10-րդ դաս.), Արմեն Սիմոնյանը (Երևան, № 165 դպրոց, 8-րդ դաս.), Եվգենի Մամյանը (Նոյեմբերյան, № 2 դպրոց, 10-րդ դաս.), Արմինե Դանիելյանը Երևան, № 165 դպրոց, 8-րդ դաս.):





հիվանդագին են ապրում: Աստիճանաբար այդ դառնում է սովորություն, մարդն աշխատում է արդարացնել ինքն իրեն: Տանջվում է, տառապում և դժբախտ համարում իրեն այնքան ժամանակ, քանի դեռ չի փոխել իր (ուշադրություն դարձրեք՝ իր) վարքագիծը:

Ուսուցիչը ստուգողական աշխատանքի համար նշանակում է «երեք», իսկ առաջ նշանակում էր «չորս» և «հինգ»: Բայց այս աշխատանքի մեջ շատ են սխալները, ուրեմն էլի պետք է պարապի, թերությունը վերացնի, ոչ թե ստուգողական աշխատանքը նետի նստարանի վրա և կոպտի ուսուցչին:

Ֆիզկուլտուրայից քառորդում «երկուս» է ստացել. ուսուցիչն ի՞նչ մեղավոր է, որ դու շարունակ փախել ես ֆիզկուլտուրայի դասից, որ դու չես սիրում ցատկել և վազել:

Կատյայի ծննդյան տարեդարձն էր և քեզ չհրավիրեց: Սխր հիշի՛ր, դու երեխաների հետ գնացիր չմըշկասահքի, Կատյային չասացիր, թեև նրա հետ նստում ես մի նստարանի: Կատյան հավաքույթի ժամանակ առաջարկեց գնալ թանգարան, դու ասացիր, թե հետաքրքիր չի, ձանձրալի է այնտեղ և ծիծաղեցիր Կատյայի «հիմար» առաջարկի վրա: Եվ այսպես շարունակ... Միշտ, լավ մտածելու դեպքում կարելի է քննել, պարզել արդարացի՞, թե՞ անարդարացի են քո նկատմամբ ընկերներդ ու մեծերը: Միշտ, ուրիշներից նեղանալուց առաջ, պետք է քննադատաբար վերաբերվես ինքդ քեզ: Եվ շատ բարդություններ իրենք իրենց կվերանան, դու քեզ կզգաս ուժեղ: Փորձիր այսպես «աշխատել դու քեզ վրա» և գրիր մեզ, թե ինչ արդյունքների հասար:

ԳՏԵՔ ՆԿԱՐՆԵՐԻ ՏԱՐԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ






Լույս է տեսնում 1925 թվականից

№ 6 հունիս 1975 թ.



ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*




«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—37—90

ՎՖ 05547: Պատվեր 1164: Տպաքանակ՝ 81700: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 3/VI 1975 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 10 Կ.



# ՍԵՎԱՆ

ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ

Ծով ու ցամաք բաժանեցին,
Սահման դրին ջրերին ջինջ,
Եվ Գեղամա լեռնաշխարհին,
Բաժին ընկավ փոքրիկ մի լիճ:

Բարձրիկ մի լիճ, հաշտ ու խաղաղ,
Վառ աստղերից ընկած մի ցող,
Սեգ լեռներում ինչպես ծիծաղ,
Ալիքվում է արևաշող:

Կապույտ-կապույտ այդ լճակը
Մեկ մանուկ է ու մեկ էլ խենթ,
Նրա արծաթ մի կաթիլը
Չեմ փոխի ես ծովերի հետ:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

ԻՆԴԵՔՍ 77806